# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ



A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ



© Издательство ЦК КП Армении, 1984.

13355-ԱՄ

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին»:

*Որոշման մեջ նշվում է, որ 1985 թվականի մայիսի 9-ին լրանում է 40 տարին այն օրվանից, երբ հաղթականորեն վերջացավ պատմության մեջ իր մասշտաբներով ու անողոքությամբ աննախադեպ ճակատամարտն ընդդեմ իմպերիալիզմի առավել հետադիմական հարվածային ուժի՝ հիտլերյան ֆաշիզմի, որն իր առջև նպատակ էր դրել ոչնչացնել աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, հաստատել համաշխարհային տիրապետություն:*

*Սովետական Միության համար այդ պատերազմը ազատագրական էր, արդարացի: Խորտակիչ պարտության մատնելով թշնամուն, սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ պաշտպանեցին սոցիալիստական հայրենիքի ազատությունն ու անկախությունը, պաշտպանեցին Հոկտեմբերի գործը: Նրանք վճռական ավանդ ներդրեցին ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների դեմ հաղթանակ նվաճելու, ֆաշիստական ստրկությունից Եվրոպայի ժողովուրդներին ազատագրելու, համաշխարհային քաղաքակրթությունը փրկելու գործում, պատվով կատարեցին իրենց հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքը: Դա նրանց մեծագույն ծառայությունն է մարդկությանը:*

*Անցած տասնամյակները է՛լ ավելի ցայտունորեն և լրիվին ցույց տվեցին Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի նվաճած հաղթանակի համաշխարհային պատմական նշանակությունը: Գերմանական ֆաշիզմի, իսկ այնուհետև ճապոնական միլիտարիզմի ջախջախումը ամենախոր ազդեցությունն ունեցավ համաշխարհային զարգացման ամբողջ ընթացքի վրա: Նպաստավոր պայմաններ ստեղծվեցին աշխատավոր զանգվածների պայքարի համար հանուն իրենց սոցիալական և ազգային ազատագրության: Ամրապնդվեցին առաջադիմական, դեմոկրատական, խաղաղասիրական ուժերի դիրքերը, աճեց կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ազդեցությունը: Գոյացավ և հաջողությամբ է զարգանում համաշխարհային սոցիալիստական սիստեմը: Արագացավ իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայման պրոցեսը, որն ավարտվեց դրա փլուզումով:*

*Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության նվաճած հաղթանակը ողջ լիակատարությամբ բացահայտեց սոցիալիզմի առավելությունները, նրա վիթխարի տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր հնարավորությունները: Դա մեծ Լենինի ստեղծած սովետական պետության, ամենաառաջավոր հասարակարգի, սոցիալիստական տնտեսական սիստեմի հաղթանակն էր: Հայրենական մեծ պատերազմը համոզչորեն ցուցադրեց կուսակցության և ժողովրդի կուռ միասնությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր մտավորականության անխախտ դաշինքը, ՍՍՀՄ-ի ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը:*



digitised by A.R.A.R.@

Հայրենական մեծ պատերազմում նվաճված հաղթանակը հաստատեց մարքս-լենինյան գաղափարախոսության կենսական հզոր ուժը։ Սովետական ժողովրդի հոգևոր ուժերի, նրա բարոյաքաղաքական համախմբվածության անսպառ աղբյուր էին գաղափարական խոր համոզվածությունը, անսահման հավատը Լենինի մեծ գործի արդարացիության նկատմամբ։

Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակը ցույց տվեց սովետական ռազմագիտության և ռազմական արվեստի գերազանցությունը, մեր զինվորական կադրերի ստրատեգիական ղեկավարման ու մարտական վարպետության բարձր մակարդակը։ Մարտական գործողությունների ընթացքում ՍՍՀՄ-ի զինված ուժերը վիժեցրին «կայծակնային պատերազմի» հիտլերյան պլանը, իսկ այնուհետև, տիրելով նախաձեռնությանը, հասան պատերազմի արմատական բեկման և ավարտեցին թշնամու ջախջախումը։ Ֆաշիզմի դեմ անողոք գոտեմարտում բանակի և նավատորմի ռազմիկները, աշխարհազորի մարտիկները ցուցաբերեցին անհուն նվիրվածություն կուսակցությանն ու ժողովրդին, հայրենասիրություն, մասսայական հերոսություն։ Ֆաշիստ զավթիչների դեմ տարած հաղթանակի գործում զգալի ավանդ ներդրեցին սովետական պարտիզաններն ու ընդհատակայինները։

Պատերազմի տարիներին մեծ սխրանք կատարեցին թիկունքի աշխատավորները։ Բանվորները, կոլտնտեսականները, գիտնականները, ինժեներները, կոնստրուկտորներն իրենց անձնվեր աշխատանքով շահեցին աննախադեպ ճակատամարտը հանուն մետաղի ու հացի, վառելիքի ու հումքի, հանուն սովետական հզոր զենքի ստեղծման։

Անօրինակ տոկունություն ու աշխատանքային հերոսություն ցուցաբերեցին սովետական կանայք։ Ճակատի և թիկունքի խնդիրների լուծման գործում կուսակցության մարտական օգնականը լենինյան կոմերիտմիությունն էր։ Պատերազմի տարիներին ժողովրդի բարձր ճանաչմանն արժանացան սովետական մշակույթի գործիչները՝ արձակագիրներ, բանաստեղծներ, կոմպոզիտորներ, արտիստներ, նկարիչներ, կինոյի աշխատողներ, լրագրողներ։ Իրենց ստեղծագործություններով նրանք դաստիարակում էին սովետական մարդկանց բոցաշունչ հայրենասիրությունն ու արիությունը։

Սովետական ժողովրդի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչը լենինյան կոմունիստական կուսակցությունն էր։ Իր բազմակողմանի գործունեությամբ նա ապահովեց քաղաքական, պետական ու ռազմական ղեկավարման, բանակի ու ժողովրդի, ճակատի ու թիկունքի կուռ միասնությունը։ Նրա կոչով ամբողջ երկիրը ոտքի ելավ ի մահ կռվելու ֆաշիզմի դեմ։ Կոմունիստական կուսակցությունը հիրավի մարտնչող կուսակցություն էր։ Կոմունիստները գտնվում էին թշնամու դեմ մղվող պայքարի ամենածանր ու վճռական տեղամասերում։ Նրանք անձնական օրինակով, կուսակցական կրքոտ խոսքով ոգեշնչում էին և հաղթանակի առաջնորդում սովետական մարդկանց։

Որոշման մեջ նշվում է, որ ֆաշիստ զավթիչների դեմ անձնուրաց էին պայքարում Հարավսլավիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի զորամիավորումների և պարտիզանական բանակների ու ջոկատների մարտիկները, Բուլղարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Հունգարիայի հայրենասերները, դիմադրության շարժման և հակաֆաշիստական ընդհատակի մասնակիցները։ Ազատագրական պայքարի առաջին շարքերում էին կոմունիստները՝ իրենց ժողովուրդների հավատարիմ զավակները, բոցաշունչ ինտերնացիոնալիստները։ Երկրորդ համաշխարհային պատերազմում հաղթանակ նվաճելու գործում մեծ ավանդ ներդրեցին ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Չինաստանի, հակահիտլերյան կոալիցիայի մյուս պետությունների ժողովուրդներն ու բանակները։

Հայրենական մեծ պատերազմի դասերը անանց նշանակություն ունեն։ Դրանցից գլխավորն այն է, որ պատերազմի դեմ պետք է պայքարել, քանի դեռ այն չի սկսվել։ Պատմական փորձը սովորեցնում է. խաղաղությունը պաշտպանելու համար հարկավոր են բոլոր խաղաղասեր ուժերի համախմբված, համաձայնեցված և եռանդուն գործողություններն ընդդեմ իմպերիալիզմի ագրեսիվ, արկածախնդրական կուրսի։ Անհրաժեշտ է բարձրացնել ժողովուրդների զգոնությունը, պահպանել և բազմապատկել սոցիալիզմի նվաճումները։



Դա առանձնապես կարևոր է այժմ, երբ հետադիմական իմպերիալիստական շրջանները, նախ և առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգների, անտեսելով պատմության դասերը, նոր «խաչակրաց արշավանք» են հայտարարել սոցիալիզմի դեմ, փորձում են ռազմական գերազանցության հասնել ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների նկատմամբ, անզուսպ կերպով ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, ձգտում ուժի դիրքից իրենց կամքը թելադրել սովետական պետություններին։ Լուրջ տագնապ են հարուցում առաջին հարվածի ամերիկյան միջուկային նոր հրթիռների ծավալումը արևմտաեվրոպական մի շարք երկրներում, ԱՄՆ-ի ռազմական նախապատրաստությունների աճը Հեռավոր Արևելքում, Ճապոնիայի ուժեղացող ռազմականացումը։ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի նրա դաշնակիցների կողմից աճող պատերազմական սպառնալիքը պահանջում է մշտապես ամրապնդել մեր հայրենիքի պաշտպանունակությունը, սովետական զինված ուժերի մարտական հզորությունը։

Սովետական Միությունը եղբայրական սոցիալիստական երկրների հետ հետևողականորեն հանդես է գալիս պատերազմի վտանգը վերացնելու, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու և խաղաղությունը պահպանելու օգտին։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը հնարավոր ամեն ինչ անում են խաղաղությունը պաշտպանելու, միջուկային աղետը կանխելու, ուժերի ստեղծված ռազմաստրատեգիական հավասարակշռության խախտում թույլ չտալու համար։ Խաղաղության պահպանման գործին հուսալիորեն են ծառայում Վարշավայի պայմանագրի երկրների ժողովուրդների ու բանակների եղբայրական դաշինքը, Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ սոցիալիստական պետությունների հաջողությամբ զարգացող բազմակողմանի համագործակցությունը։

Կոմունիստական կուսակցության հաստատակամ ու հետևողական քաղաքականության շնորհիվ սովետական ժողովուրդը արդեն չորս տասնամյակ ապրում է խաղաղության պայմաններում։ Անշեղորեն զարգանում են սովետական հասարակության էկոնոմիկան, քաղաքական սիստեմը, սոցիալիստական դեմոկրատիան, ամրապնդվում է համաժողովրդական պետությունը, բարձրանում է մարդկանց նյութական ու կուլտուրական կենսամակարդակը։ Սովետական մարդկանց բոլոր սերունդների անձնվեր աշխատանքով ստեղծվել և կատարելագործվում է զարգացած սոցիալիզմի հասարակությունը։

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովուրդը հաղթանակ տարավ հանուն աշխարհի խաղաղության ու կյանքի գոյատևման։ Ֆաշիստական ստրկացման սպառնալիքից իր փրկության, իր ազատության համար մարդկությունը հսկայական չափով պարտական է աշխարհի առաջին սոցիալիստական պետությանը, թշնամու դեմ նրա տարած պատմական հաղթանակին։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշեց Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի նվաճած հաղթանակի 40-ամյակի օրը՝ 1985 թվականի մայիսի 9-ը, նշել որպես համաժողովրդական տոն։

Կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, բանակի և նավատորմի քաղմարմիններին հանձնարարված է արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում, զորամասերում և ռազմանավերում, աշխատավորական բոլոր կոլեկտիվներում գաղափարախոսական, քաղմասսայական լայն աշխատանք ծավալել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի համաշխարհային պատմական նշանակությունը, ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման գործում Սովետական Միու-



digitised by A.R.A.R.@

թյան ներդրած վճռական ավանդը, սովետական զինված ուժերի ազատագրա-
կան առաքելությունը պարզաբանելու նպատակով:

Խորապես բացահայտել ՍՄԿԿ-ի՝ որպես թշնամու դեմ տարած հաղթա-
նակի կազմակերպչի ու ոգեշնչողի դերը, սովետական մարդկանց, բանակի ու
նավատորմի ռազմիկների, պարտիզանների և ընդհատակի մասնակիցների,
թիկունքի աշխատավորների մասսայական հերոսությունը:

Պետք է ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բոլոր միջոցնե-
րով վառ ու համոզիչ ցույց տալ ՍՄԿԿ-ի արգասավոր ու նպատակասլաց գոր-
ծունեությունը զարգացած սոցիալիզմը կատարելագործելու, մեր հայրենիքի
տնտեսական ու պաշտպանական հզորությունը, սովետական հասարակության
սոցիալ-քաղաքական, գաղափարական և ինտերնացիոնալ միասնությունն ամ-
րապնդելու ասպարեզում, կուսակցության հոգատարությունը ժողովրդի բարե-
կեցության բարձրացման նկատմամբ: Համակողմանիորեն բացահայտել կո-
մունիստական կուսակցության և սովետական պետության խաղաղասիրական
արտաքին քաղաքական կուրսը, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամ-
րությունը, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցություն-
ների, բոլոր խաղաղասեր ուժերի եռանդուն գործողություններն ընդդեմ պա-
տերազմի վտանգի:

Մերկացնել իմպերիալիզմի հակաժողովրդական, հետադիմական էությու-
նը, ԱՄՆ-ի և նրա նատոյական դաշնակիցների ռազմատենչ պլանները, ռևան-
շիզմն ու ճապոնական միլիտարիզմը, փաստարկված վճռական հակահարված
հասցնել մեր գաղափարախոսական հակառակորդներին, երկրորդ համաշխար-
հային պատերազմի պատմության ամեն կարգի կեղծարարներին:

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություն-
ներին առաջարկված է Հայրենական մեծ պատերազմում նվաճված հաղթա-
նակի 40-ամյակի նախապատրաստությունն ու տոնակատարությունը լիովին
օգտագործել կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհա-
մագումարյան պլենումների որոշումների կատարման ասպարեզում սովետա-
կան մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության հետագա
բարձրացման, 1984 թվականի և ամբողջությամբ վերցված հնգամյակի առա-
ջադրանքները կատարելու նպատակով սոցիալիստական մրցության զարգաց-
ման համար: Ըստ ամենայնի պաշտպանել ու զարգացնել աշխատանքային
արժեքավոր նախաձեռնությունները, որոնց նպատակն է արժանավայել դի-
մավորել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած
հաղթանակի տոնը: Մշտապես պարզաբանել, որ ներկայիս պայմաններում
պլանային առաջադրանքների կատարումը, բարեխիղճ, արտադրողական աշ-
խատանքը, բարձր կազմակերպվածությունն ու կարգապահությունը յուրաքան-
չյուր սովետական մարդու, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ոչ
միայն քաղաքացիական պարտականությունն են, այլև հայրենասիրական
պարտքը:

Մեծ հաղթանակի հոբելյանի նախապատրաստությունը պետք է նպաստի
ամբողջ գաղափարադաստիարակչական աշխատանքի ուժեղացմանը: Այն պայ-
մաններում, երբ իմպերիալիստական ագրեսիվ շրջանները սրում են լարվա-
ծությունը, սիստեմատիկաբար թշնամական գաղափարախոսական կամպա-
նիաներ ու դիվերսիաներ կազմակերպում Սովետական Միության, սոցիալիզ-
մի եղբայրական երկրների դեմ, հարաճուն նշանակություն է ստանում աշխա-
տավորների դաստիարակությունը սովետական հայրենասիրության և պրոլե-
տարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ-ի ժողովուրդների
բարեկամության ոգով: Անհրաժեշտ է յուրաքանչյուր սովետական մարդու մեջ
ձևավորել դասակարգային հստակ դիրքորոշումներ, քաղաքական բարձր զգո-
նություն, իմպերիալիզմի հանդեպ անհաշտվողականություն, սոցիալիզմի ար-
դարացիության ու անպարտելիության համոզվածություն:

Կարևոր խնդիր է կոմունիստական կուսակցության, սովետական ժողո-
վրդի, նրա զինված ուժերի մարտական փառավոր ավանդույթների պրոպա-



գանդումը, ռազմահայրենասիրական և մասսայական-պաշտպանական աշխա-
տանքի ուժեղացումը: Սովետական մարդիկ, նախ և առաջ երիտասարդները
պետք է տիրապետեն ռազմական գործի հմտություններին, պատրաստ լինեն
պաշտպանելու սոցիալիստական հայրենիքը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների
կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին,
օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, միութենական և ինքնավար
հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպու-
տատների սովետների գործկոմներին, մինիստրություններին, գերատեսչու-
թյուններին, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին պար-
տավորեցրել է ուժեղացնել ուշադրությունը պատերազմի և աշխատանքի վե-
տերանների նկատմամբ, բարձրացնել նրանց դերը տնտեսական ու հասարա-
կական կյանքի բոլոր ոլորտներում, նրանց ավելի լայնորեն ներգրավել մա-
տաղ սերնդի դաստիարակման գործում, մշտապես հոգ տանել Հայրենական
մեծ պատերազմի մասնակիցների մասին: Վերահսկողություն իրականացնել
պատերազմի մասնակիցներին՝ գործող օրենսդրությամբ սահմանված արտո-
նություններ ու առավելություններ տրամադրելու նկատմամբ: Պետք է հատուկ
ուշադրություն դարձվի պատերազմի հաշմանդամների և զոհվածների ընտա-
նիքների նյութակենցաղային պայմանների հետագա բարելավմանը, ներառյալ
նրանց առաջնահերթ ապահովմանը բնակելի մակերեսով և բուժսպասարկմամբ:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կու-
սակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին
ու շրջկոմներին, բանակի և նավատորմի քաղմարմիններին, մինիստրություն-
ներին ու գերատեսչություններին, միութենական և ինքնավար հանրապետու-
թյունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպուտատների սո-
վետների գործկոմներին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, ՍՍՀՄ ԴՕՍԱԱՖ-ի
կենտկոմին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը, ար-
տասահմանյան երկրների հետ բարեկամության ու մշակութային կապի սովե-
տական ընկերությունների միությանը, պատերազմի վետերանների սովետա-
կան կոմիտեին, խաղաղության պաշտպանության սովետական կոմիտեին, Եվ-
րոպայի անվտանգության ու համագործակցության սովետական կոմիտեին,
ստեղծագործական միություններին հանձնարարված է կոնկրետ միջոցառումներ
մշակել և իրականացնել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողո-
վրդի հաղթանակի 40-ամյակը նախապատրաստելու և տոնելու նպատակով:

1985 թվականի մայիսի 3-ից մինչև 9-ն ընկած ժամանակամիջոցում հաղ-
թանակի 40-ամյակին նվիրված հանդիսավոր ժողովներ կանցկացվեն միու-
թենական հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասային, մար-
զային, օկրուգային ու շրջանային կենտրոններում, քաղաքներում, արդյունա-
բերական ձեռնարկություններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում,
հիմնարկներում, ուսումնական հաստատություններում, զորամասերում ու
ռազմանավերում, կկազմակերպվի Հայրենական մեծ պատերազմի վետերան-
ների մեծարում:

1985 թվականի մայիսի 8-ին Կրեմլի Համագումարների պալատում տեղի
կունենա Մոսկվա քաղաքի աշխատավորության և Մոսկվայի կայազորի ռազ-
միկների ներկայացուցիչների հանդիսավոր ժողով՝ նվիրված Հաղթանակի
40-ամյակին:

Պաշտպանվեց Հաղթանակի 40-ամյակին նվիրված հիշատակի համամիու-
թենական հերթափոխ անցկացնելու՝ հերոս քաղաքների աշխատավորական կո-
լեկտիվների նախաձեռնությունը:

Մայիսի 9-ին պսակներ կդրվեն բանակի ու նավատորմի այն ռազմիկնե-
րի, պարտիզանների, ընդհատակային հերոսների հուշարձաններին ու կոթող-
ներին, գերեզմաններին, որոնք զոհվել են գերմանաֆաշիստական զավթիչների
և ճապոնական միլիտարիստների դեմ մղված պայքարում:



digitised by A.R.A.R.@

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը, ՍՍՀՄ պետկինոյին, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը, ստեղծագործական միություններին հանձնարարված է անհրաժեշտ աշխատանք կատարել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի և նրա զինված ուժերի հերոսական սխրանքի մասին, հաղթանակի ժառանգորդների՝ սովետական ռազմիկների մասին գեղարվեստական ու վավերագրական նոր ժապավեններ ստեղծելու համար։

1985 թվականի ապրիլին կանցկացվի ստեղծագործական միությունների և կազմակերպությունների միացյալ պլենում՝ նվիրված 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակին։

Կենտրոնական թերթերի ու հանդեսների խմբագրություններին, ՍՍՀՄ հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեին, ՍՍՀՄ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի ու գրքի առևտրի գործերի պետական կոմիտեին, ՏԱՍՍ-ին, «Նորություններ» մամուլի գործակալությանը, հեղինակային իրավունքների համամիութենական գործակալությանը, քաղաքական գրականության, ՍՄԿԿ Կենտկոմի «Պլակատ» հրատարակչություններին առաջարկված է ապահովել հաղթանակի 40-ամյակի նախապատրաստության ու տոնակատարության լայն լուսաբանումը, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի նվաճած հաղթանակի համաշխարհային պատմական նշանակությունը բացահայտող գրքերի, պլակատների, ալբոմների, մյուս նյութերի հրատարակումը ՍՍՀՄ-ի ժողովուրդների լեզուներով և օտար լեզուներով։ Ժամանակին իրականացնել պատերազմի մասին գեղարվեստական, վավերագրական և հուշագրական լավագույն ստեղծագործությունների հրատարակումը, որոնք նախատեսված են հրատարակչությունների պլաններով։

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, պաշտպանության մինիստրությանը և սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը հանձնարարված է 1985 թվականի առաջին կեսին անցկացնել գիտական կոնֆերանս՝ նվիրված Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակին, ինչպես նաև միլիտարիստական Ճապոնիայի ջախջախմանը։

ՀամԼԿԵՄ Կենտկոմը, ՍՍՀՄ ԴՕՍԱԱՖ-ի կենտկոմը, պատերազմի վետերանների սովետական կոմիտեն 1985 թվականի մայիսին հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերով երիտասարդության արշավի հաղթողների համամիութենական հավաք կանցկացնեն հերոս քաղաք Տուլայում։

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի կոմիտեին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, ՍՍՀՄ ԴՕՍԱԱՖ-ի կենտկոմին հանձնարարված է ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության, ՍՍՀՄ լուսավորության մինիստրության, ՍՍՀՄ պրոֆտեխպետկոմի հետ համատեղ 1985 թվականի երկրորդ եռամսյակում հերոս քաղաքներում անցկացնել առաջին համամիութենական պատանեկան խաղերը՝ նվիրված հաղթանակի 40-ամյակին։

Նախատեսված է 1985 թվականի մայիսին Մոսկվայում՝ Տուշինոյի օդանավակայանում, անցկացնել մարզաավիացիոն տոն՝ նվիրված Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակին։

ՍՍՀՄ պետկինոյին հանձնարարված է 1985 թվականին համամիութենական կինոփառատոն նվիրել հաղթանակի 40-ամյակին, փառատոնին հրավիրել արտասահմանյան կինեմատոգրաֆիայի ներկայացուցիչների։

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությունը, ՍՍՀՄ նկարիչների միությունը 1985 թվականի ապրիլ—մայիսին Մոսկվայում՝ կենտրոնական ցուցասրահում կանցկացնեն «Մեծ հաղթանակի 40 տարին» համամիութենական գեղանկարչական ցուցահանդես։



ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը, ՍՍՀՄ պետկինոյին, ՍՍՀՄ գրողների միությանը, ՍՍՀՄ կոմպոզիտորների միությանը, ՍՍՀՄ նկարիչների միությանը, համառուսաստանյան թատերական ընկերությանը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը առաջարկված է Ա. Ֆադեևի, Ա. Ալեքսանդրովի, Ա. Դովժենկոյի, Մ. Գրեկովի և մշակույթի ականավոր այլ գործիչների անվան մեդալները շնորհել հաղթանակի 40-ամյակի օրերին ռազմահայրենասիրական թեմային նվիրված լավագույն ստեղծագործությունների համար։

«Գիտելիք» համամիութենական ընկերությանը հանձնարարված է հաղթանակի 40-ամյակին նվիրված հասարակական-քաղաքական ընթերցումներ անցկացնել Մոսկվայում, միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասային, մարզային կենտրոններում, քաղաքներում և շրջաններում։

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին հանձնարարված է դասախոսություններ, թեմատիկ երեկոներ, պատերազմի վետերանների հետ հանդիպումներ կազմակերպել ակումբներում, գրադարաններում, թանգարաններում, զբոսայգիներում։

Կանցկացվեն գեղարվեստական ինքնագործունեության համամիութենական ստուգատես, լավագույն երգի մրցույթ՝ նվիրված հաղթանակի 40-ամյակին։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնել, որ սովետական մարդիկ էլ ավելի սերտորեն կհամախմբվեն լենինյան կուսակցության շուրջը, Հայրենական մեծ պատերազմում տարված հաղթանակի 40-ամյակը նոր նվաճումներով կնշանավորեն տնտեսական ու մշակութային շինարարության բոլոր տեղամասերում, իրենց անձնվեր աշխատանքով արժանի ավանդ կներդնեն սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում։

digitised by A.R.A.R.@

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԿՈՒՐՍՈՎ

**Վ. ՂԱԼՈՒՄՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

*ՂԵԿԱՎԱՐՎԵԼՈՎ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ որոշումները, հանրապետության աշխատավորական կոլեկտիվները կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ լայն աշխատանք են ծավալել արտադրության արդյունավետության բարձրացման, էկոնոմիկայի ըստ ամենայնի ինտենսիվացման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արագ ներդրման, ժողովրդական տնտեսության կառավարման բարելավման առանցքային հարցերի լուծման նպատակով։ Ուշադրության կենտրոնում է պարենային ծրագրի իրականացումը։*

*«Այսօր մեր առջև խնդիր է դրված,— ասել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— ավելի բարձր բնագծերի հասնել հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների արտադրության և ժողովրդին սննդամթերքներով և առաջին հերթին մսով, կաթով, մրգեղենով ու բանջարեղենով ապահովելու գործում»։*

*Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման շնորհիվ ժողովրդական տնտեսության ագրոարդյունաբերական հատվածում հուսադրող տեղաշարժեր են կատարվել։ Ավելացել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու դրանց մատակարարումները պետությանը, բարձրացել են սննդամթերքների սպառման մակարդակն ու հաշվեկշռվածությունը։ 1983 թ. գյուղատնտեսության համախառն արտադրանքը, նախորդ տարվա համեմատությամբ, երկրում ավելացել է 5 տոկոսով ու հասել շուրջ 134 միլիարդ ռուբլու։ Նկատելիորեն բարելավվել են ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերի աշխատանքը, կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության տնտեսական ցուցանիշները, արագացել գյուղում կատարվող սոցիալական վերափոխումների տեմպերը։ Զգալիորեն մեծացել են բնակարանային և կուլտուր-կենցաղային, առողջապահության, ժողովրդական կրթության օբյեկտների շինարարության մասշտաբները։*

*Վերջերս տեղի ունեցած ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմին նվիրված հանրապետական տնտեսագիտական խորհրդակցությունը համամիութենական խորհրդակցությունում առաջադրված խնդիրների լույսի ներքո լայնորեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումների, պարենային ծրագրի կենսագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործունեությունը։*

*Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական համալիրի մյուս ճյուղերի հետագա զարգացման ստրատեգիական ուղիները մշակվել են ՀԿԿ XXVI և XXVII համագումարների, ՀԿԿ Կենտկոմի պլենումների կողմից, ելնելով կուսակցության ագրարային քաղաքականությունից։*

*Հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի աշխատողները, հետևողականորեն իրականացնելով պարենային ծրագիրը, զգալի հաջողություններ են հասել ընթացիկ հնգամյակի երեք տարվա պլանային առաջադրանքների կատարման գործում։ Այդ ժամանակաշրջանում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի աճը կրկնապատիկ գերազանցել է պլանով նախատեսված տեմպերը, սահմանվածից ավելի ստացվել է 127 միլիոն ռուբլու արտադրանք։*

*Տանրակշիռ է գյուղի աշխատավորների ավանդը հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման գործում։ Համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած բարձր արդյունքների համար Սովետական Հայաստանը վերջին 8 տարիներին անընդմեջ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։*

*Մեր էկոնոմիկայի ագրարային հատվածում ձեռք բերված հաջողությունները դաշտերի ու ֆերմաների, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատողների անձնվեր ջանքերի, կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական մեծ աշխատանքի, սոցիալիստական մրցության լայն ծավալման, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրման արգասիք են։*

*Այսուհանդերձ, գյուղատնտեսական արտադրության մեջ դեռևս անբավարար են օգտագործվում առկա ռեզերվներն ու հնարավորությունները, մի շարք տեղերում դանդաղ է աճում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։*

*Ամենուրեք չէ, որ հաջողվել է նկատելիորեն բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասունների ու թռչունների մթերատվությունը։ Գյուղատնտեսությանը հատկացվող զգալի միջոցներ դեռևս մնում են չիրացված։ Կուսակցության մի շարք շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական աշխատանքը միշտ չէ, որ համապատասխանում է արդի պահանջներին։ Նրանք հաճախ հետևողական աշխատանք չեն տանում պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անշեղ կատարման համար տնտեսությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվության բարձրացման, կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակության նպատակով։ Անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում գյուղատնտեսության էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման ոճի ու մեթոդների կատարելագործմանը։*

*Գյուղատնտեսության մեջ տնտեսավարման մակարդակը մեծապես պայմանավորված է արտադրության գլխավոր միջոցի՝ հողի հմուտ և նպատակամետ օգտագործմամբ։ Վերջին տարիներին հանրապետությունում նկատելիորեն բարձրացել է հողագործության կուլտուրան։ Արտադրության գիտականորեն հիմնավորված համակարգերի ներդրման, մշակության ագրոտեխնիկայի բարելավման միջոցով զգալիորեն ավելացել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու համախառն արտադրանքը։ Դրա հետ մեկտեղ հողային ռեսուրսների օգտագործման բնագավառում ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Ինտենսիվ հողագործության պահանջներին լրիվ չափով չի համապատասխանում մելիորացված հողերի արդյունավետ օգտագործման մակարդակը։ Բավական է նշել, որ ոռոգվող հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է ընդամենը 1.100—1.200 ռուբլու համախառն արտադրանք։ Չի կարելի նորմալ համարել յուրաքանչյուր ջրովի հեկտարից ընդամենը 22—23 ցենտներ հացահատիկային կուլտուրաների, 140—150 ցենտներ կարտոֆիլի, 240—250 ցենտներ բանջարեղենի, 70—80 ցենտներ բոստանային կուլտուրաների, 130—140 ցենտներ սիլոսացու կուլտուրաների, 45—50 ցենտներ պտուղների ստացումը։ Ավելին, տարիներ շարունակ գյուղատնտեսական շրջանառությունից դուրս են մնում ոչ քիչ քանակությամբ ոռոգելի հողեր։ Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության տնտեսություններում միջին հաշվով չեն*





digitised by A.R.A.R.@

*օգտագործվել 5.300 հեկտար, իսկ 1983 թվականին՝ 2.700 հեկտար ջրովի հողեր (Արարատի, Աշտարակի, Նաիրիի և այլ շրջաններում)։ Հանրապետության հողերի ոռոգվող ֆոնդը կազմում է 283 հազար հեկտար կամ բոլոր գյուղատնտեսական ցանքատարածությունների 21,2 տոկոսը և այդ հողատարածությունից ստացվում է հողագործության ամբողջ համախառն արտադրանքի 80—82 տոկոսը։ Ուստի ոռոգվող հողերի ռացիոնալ և արդյունավետ օգտագործման հարցերը կարևոր ժողովրդատնտեսական նշանակություն ունեն։*

*Մեծ միջոցներ են հատկացվում Արարատյան դաշտի գերխոնավ հողերի մելիորացման և աղակալած հողերի գյուղատնտեսական յուրացման համար։ Միայն ընթացիկ հնգամյակի երեք տարում «Հայգլխջրշինը» այդ նպատակով իրացրել է 25 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, տնտեսություններին են հանձնվել 1.156 հեկտար աղազերծված հողեր։ 4.429 հեկտար գերխոնավ հողերում վերակառուցվել են ոռոգիչ ցանցերը, բարելավվել է 1.935 հեկտար հողերի մելիորատիվ վիճակը, կատարվել է 1.703 հեկտար ոռոգվող հողերի հիմնական հարթեցում և այլն։ Դրա հետ մեկտեղ այդ աշխատանքների տեմպերը դեռևս դանդաղ են ու չեն ապահովում սահմանված առաջադրանքների կատարումը։ 1981—1983 թթ. Արարատյան դաշտի աղակալած հողերի մելիորացման աշխատանքների պլանը կատարվել է 96, իսկ ոռոգվող հողերի մելիորացման աշխատանքներինը՝ 60 տոկոսով։ Անարդյունավետ է գործում դրենաժային ցանցը։ Տնտեսությունները չեն իրագործում նախատեսված ագրոտեխնիկական միջոցառումները, խախտում են ոռոգման ռեժիմը, որի հետևանքով յուրացված հողերի մի մասը կրկին գերխոնավանում և աղակալում է։*

*Հանրապետության պարենային ծրագրով նախատեսված է մինչև 1990 թ. ընդգրկող ժամանակաշրջանում օգտագործման հանձնել 60 հազար հեկտար ջրովի հողեր, որը հնարավորություն կընձեռի զգալիորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը։ Սակայն հողատարածության ընդլայնման հետ մեկտեղ առաջնահերթ նշանակություն ունեն ոռոգելի հողագործության կուլտուրայի և հանրապետության սահմանափակ ջրային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման հարցերը։ Անցած երեք տարում կառուցվել ու շահագործման են հանձնվել մի շարք խոշոր ոռոգիչ համակարգեր, պոմպակայաններ, իրականացվել են ջրման ցանցի վերակառուցման և մայր ջրանցքների տեխնիկական կատարելագործման միջոցառումներ։*

*Դրա հետ մեկտեղ հանրապետությունում գյուղատնտեսության արտադրանքի արտադրության աճի տեմպերը կասեցվում են ջրային ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործման և ոռոգիչ համակարգերի անբավարար վիճակի պատճառով։ Տարիներ ի վեր չի բարձրանում դրանց օգտակար գործողության գործակիցը (այն չի գերազանցում 0,55—0,60-ից)։ Հակաֆիլտրացիոն միջոցներով ապահովված է ոռոգիչ ցանցի ընդամենը 51 տոկոսը։ Այս ամենի հետևանքով ամեն տարի վատնվում է 500—600 միլիոն խորանարդ մետր ոռոգման ջուր կամ Սևանա լճից բաց թողնվող ջրի ծավալից 1,5 անգամ ավելի։ Դեռևս դանդաղ են ներդրվում ոռոգման առաջավոր մեթոդները։ Զգալիորեն ետ են մնում Թալինի ոռոգման համակարգի ենթակա հողերի յուրացումը, Բաղրամյանի շրջանի սովխոզային նոր ավանների շինարարությունը։ Դրա հետևանքով դեռևս հնարավոր չէ լիարժեք ու ռացիոնալ օգտագործել Ախուրյանի ջրամբարի ջրերը։*

*Շինանյութերի արդյունաբերության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունները, գունավոր մետալուրգիայի և «Հայոսկի» վարչությունները, տեղական սովետների գործկոմների թողտվությամբ, շարունակում են խախտել հողային օրենսդրությունը, մշտապես չեն կատարում հողերի ռեկուլտիվացիա։ Այս մասին բազմիցս խոսվել է, սակայն առաջադիմություն չի նկատվում։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում հողերի ռեկուլտիվացիայի պլանը կատարվել է ընդամենը 68 տոկոսով։*

*Հանրապետությունում արագ տեմպերով ջրամբարներ են կառուցվում,*



*ուստի այսօր բացառիկ կարևորություն ունի դրանց տակ մնացող հողերի արգավանդ շերտի հավաքումն ու օգտագործումը։ Ախուրյանի, Եղվարդի, Սպանդարյանի ջրամբարների թասից, համաձայն աշխատանքային նախագծի, պետք է հետագա օգտագործման համար դուրս բերվեր 8,5 միլիոն խորանարդ մետր հող։ Սակայն դուրս է բերվել ընդամենը 377 հազար խորանարդ մետր։ Ավելին, այդ քանակից օգտագործված է միայն 11 հազարը։ Սա անպատասխանատու վերաբերմունք է ժողովրդական հարստության նկատմամբ։ Մի կողմից հսկայական միջոցներ են հատկացվում հողերի վիճակի բարելավման և նոր հողերի յուրացման համար, մյուս կողմից՝ վատնվում են բարձրորակ հողային ռեսուրսները։*

*Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական համալիրի հարցերի հանձնաժողովի, գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության, պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրությունների, համակարգի մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների, «Հայգլխջրշինի», նախագծային և գիտահետազոտական ինստիտուտների, ժողովրդական դեպուտատների շրջսովետների գործկոմների, կոլտնտեսությունների ու սովխոզների խնդիրն է՝ անհետաձգելի միջոցներ ձեռնարկել հանրապետության հողային ու ջրային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունն ըստ ամենայնի բարձրացնելու համար։*

*Պարենային ծրագրի կարևոր խնդիրներից մեկը հացահատիկային տնտեսության հետագա ամրապնդումն է։ Վերջին տարիներս էական տեղաշարժեր են կատարվել սերմնաբուծության բարելավման, ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործման, հացահատիկային կուլտուրաների նոր, բարձր բերքատու սորտերի ցանքատարածությունների ընդլայնման գործում։ Հանրապետությունն ամեն տարի կատարում է հացահատիկի մթերումների պլանները։ Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Արթիկի, Անիի և այլ շրջանների կոլտնտեսություններ ու սովխոզներ ստանում են հացահատիկային կուլտուրաների կայուն բարձր բերք։*

*Դրա հետ մեկտեղ հացահատիկի մշակության կազմակերպման գործում դեռևս քիչ չեն թերություններն ու չլուծված հարցերը։ Շատ տնտեսություններ և առանձին շրջաններ տարիներ ի վեր դոփում են տեղում կամ նույնիսկ վատացնում ցուցանիշները։ Ընդ որում ընթացիկ հնգամյակի անցած երեք տարում հացահատիկի միջին տարեկան համախառն բերքը, նախորդ հնգամյակի համապատասխան ցուցանիշի համեմատությամբ, պակասել է 6,6 տոկոսով, վատացել է հացահատիկի որակը։ 1982—1983 թթ. արդյունքների վրա ազդեցին եղանակի անբարենպաստ պայմանները։ Սակայն այնտեղ, ուր լավ աշխատեցին, արդյունքները բարձր էին։ Իսկ լավ աշխատել նշանակում է ցանքը կատարել լավագույն ժամկետներում և կոնդիցիոն սերմացուով, լավ պարարտացված հողում, ժամանակին կիրառել ցանքսերի խնամքի ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը, սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքել բերքը։ Ցավոք, մեզանում բնավ ամենուրեք չէ, որ սովորել են այդպես աշխատել։ Տարիներ շարունակ աշնանացանի 10—16 տոկոսը շարքից դուրս է գալիս, վերացանվում, որի հետևանքով տնտեսությունները խոշոր վնասներ են կրում։ Դեռևս չեն լուծված հացահատիկային կուլտուրաների որակյալ սերմնանյութի հարցում կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջմունքների լրիվ ապահովման, սերմնաբուծական տնտեսությունների մասնագիտացման ու համակենտրոնացման, արտադրության մեջ տեղական սելեկցիայի նոր, բարձր բերքատու սորտերի ներդրման հարցերը։*

*Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական համալիրի հարցերի հանձնաժողովի, գյուղատնտեսության մինիստրության, կուսակցության շրջկոմների, շրջսովետների գործկոմների խնդիրն է՝ լրացուցիչ միջոցներ ձեռնարկել ապահովելու ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հոկտեմբերյան պլենումի առաջադրած պահանջի կատարումը՝ առաջիկա տարիներին հանրապետությունում հացահատիկային կուլտուրաների միջին բերքա-*



digitised by A.R.A.R.@

տվությունը հասցնել հեկտարից 30—35 ցենտների, իսկ համախառն բերքը՝ 400 հազար տոննայի։ Ընդ որում նախատեսված բնագծերը պետք է նվաճվեն ճյուղի ինտենսիվացման միջոցով, առանց հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ավելացման։

Վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարված բանջարաբուծության ինտենսիվացման, բանջարեղենի արտադրության ծավալների ավելացման նպատակով։ Սակայն այս բնագավառում ևս քիչ չեն թերություններն ու վրիպումները։ 1983 թ. բանջարեղենի մթերման պլան ունեցող 31 շրջաններից 12-ը չկատարեցին սահմանված առաջադրանքը, պակաս տալով մոտ 40 հազար տոննա արտադրանք, մշակվող 15 տեսակ բանջարեղենից թերակատարվեցին 11-ի գնումների պլանները։ Արտաշատի և Հոկտեմբերյանի շրջանները չեն կատարել պետությանը վարունգ, սոխ և սխտոր վաճառելու պլանները։ Նույն վիճակն է նաև մյուս խոշոր բանջարաբուծական շրջաններում (Մասիս, Արարատ, Էջմիածին)։ 1983 թ. առևտրի կազմակերպություններին և վերամշակող ձեռնարկություններին նախատեսվածից պակաս մատակարարվեցին մեծ քանակությամբ վարունգ, գլուխ սոխ, բադրիջան, տաքդեղ։ Մշտապես թերակատարվում են բանջարեղենի քիչ տարածված տեսակների արտադրության պլանները (բամիա, կանաչ սիսեռ, դդմիկ և այլն)։ Գյուղատնտեսության և պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրությունների խնդիրն է շտկել դրությունը և առավել բավարարել բնակչության ու արդյունաբերության պահանջմունքները։

Մեր հանրապետությունում նպաստավոր կլիմայական պայմանների շնորհիվ զարգանում է փակ գրունտի բանջարաբուծությունը, ավելանում են ջերմոցային կոմբինատների տարածությունները։ Արդեն հնգամյակի վերջերին կունենանք 100 հեկտար ջերմոցային տնտեսություն։ Սակայն առկա հնարավորություններն առայժմ բնավ էլ արդյունավետ չեն օգտագործվում։ Մեկ քառակուսի մետրից ստացվում է ընդամենը 11,4 կգ բանջարեղեն, այդ թվում՝ մոտ 10 կգ պոմիդոր, 19 կգ վարունգ, 3—4 կգ կանաչեղեն։ Տարօրինակ է, բայց փաստ, որ ձմռան շրջանում, և ավելին, դեկտեմբերից մինչև ապրիլ ամիսը ջերմատնային կոմբինատներն արտադրում են բանջարեղենի տարեկան բերքի ընդամենը 20—25 տոկոսը։ Մնացած արտադրանքն ստացվում է հիմնականում բաց հողում մշակվող բանջարեղենի հետ զուգահեռ և դրա մի մասը, պահանջարկ չգտնելով, ուղարկվում է վերամշակման։ Պտուղ-բանջարեղենի տնտեսության և գյուղատնտեսության մինիստրությունները, տեղական մարմինները պետք է անհապաղ միջոցներ ձեռնարկեն բանջարաբուծության վարման կուլտուրան արմատապես բարելավելու համար։

Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզներն արդեն ութերորդ տարին է չեն կատարում բոստանային կուլտուրաների արտադրության ու մթերումների պլանները։ Բարձիթողի վիճակում են ագրոտեխնիկայի հարցերը, նկատվում է այդ կուլտուրաների ցանքատարածությունների կրճատման անառողջ միտում։ Անհրաժեշտ է յուրաքանչյուր շրջանում և տնտեսությունում մշակել բոստանային կուլտուրաների աճեցման առաջավոր տեխնոլոգիա ներդնելու, դրանց արտադրության ու մթերման ծավալներն ըստ ամենայնի ավելացնելու կոնկրետ միջոցառումներ։

Հանրապետությունը վերջին տարիներս կատարում է կարտոֆիլի մթերման պլանները։ Սակայն այդ կարևոր ճյուղում դեռևս կան չլուծված շատ հարցեր։ Մեծ է բերքատվության խայտաբղետությունը, պատշաճ մակարդակի վրա չէ սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքը, միշտ չէ, որ կիրառվում է անհրաժեշտ ագրոտեխնիկան, զգալի են բերքի կորուստները հիվանդությունների ու վնասատուների պատճառով։ Լավագույն տնտեսությունների աշխատանքի փորձը հիմք է տալիս առաջադրելու կարտոֆիլի բերքատվությունն առնվազն 200 ցենտների հասցնելու խնդիրը, դրանով իսկ ռեալ նախադրյալներ ստեղծելով հանրապետության ազգաբնակչության կարտոֆիլի պահանջը սեփական արտադրության հաշվին ապահովելու վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի առաջադրանքի իրականացման համար։



Վերջին տարիներս որոշակի հաջողություններ են ձեռք բերվել խաղողագործության և պտղաբուծության ինտենսիվացման գործում։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում հիմնվել է 4.903 հեկտար խաղողի և 6.234 հեկտար պտղատու այգի։ 1981—1983 թթ. տարեկան միջին հաշվով պետությանը վաճառվել է 233 հազար տոննա խաղող և 106 հազար տոննա պտուղ, որ համապատասխանաբար 10,7 և 7,8 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի միջին տարեկան ցուցանիշից։ Դրա հետ մեկտեղ այդ ճյուղերի ինտենսիվացման մակարդակը դեռևս չի կարելի բավարար համարել։ Խաղողի արտադրության հետագա ավելացման, պարենային ծրագրով սահմանված բնագծերի նվաճման բնագավառում մինիստրությունների և գերատեսչությունների, շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների խնդիրների մասին հանգամանորեն խոսվեց ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. մարտյան պլենումում։

Այսօր անհրաժեշտ է ուշադրությունը սևեռել այնպիսի վճռական միջոցների ձեռնարկման վրա, որոնք թույլ տային առաջիկա 2—3 տարում ավարտել հին տնկարկների լիակատար վերակառուցումը։ Այդ միջոցառման հիմնական նպատակը խաղողի բարձր բերքատու տեսակների նոր զանգվածների ստեղծումն է՝ մշակության առավելագույն մեքենայացմամբ։ Տարիներ շարունակ չի լուծվում խաղողագործության և պտղաբուծության համար հենասյուների պատրաստման խնդիրը։ Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը, մյուս կազմակերպությունները ձախողում են անհրաժեշտ քանակի և որակի հենասյուների պատրաստման գործը։

ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հուլիսյան պլենումը սահմանեց պտղաբուծության հետագա ինտենսիվացման ծավալուն ծրագիր։ Նախատեսված է մինչև 1990 թ. հանրապետությունում պտղատու այգիների տարածությունը հասցնել 60 հազար, այդ թվում ինտենսիվ տիպի այգիներինը՝ 10 հազար հեկտարի։ Այս ծրագիրը կատարվում է։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում հիմնվել է 2.832 հեկտար ինտենսիվ այգիներ։ Այդ նպատակով քիչ բան չի արված Աբովյանի, Աշտարակի, Նաիրիի, Հոկտեմբերյանի, Սպիտակի, Էջմիածնի և այլ շրջաններում։

Սակայն այս բնագավառում նույնպես կան թերացումներ ու վրիպումներ։ «Հայգլխջրշինը» և «Գյուղտեխպետկոմը» ձգձգում են Երևան—Աշտարակ խճուղու երկայնքով ընկած հողերի յուրացումը, որտեղ նախատեսված է հիմնել 850 հեկտար ինտենսիվ պտղատու այգիներ։ Արարատյան դաշտի առանձին շրջանների տնտեսություններ (Արարատ, Մասիս և այլն) շարունակում են հիմնել հնդավոր պտղատու կուլտուրաների այգիներ։

Խնդիր է դրված 1990 թ. հանրապետությունում պտուղների արտադրությունը հասցնել 260 հազար տոննայի։ Սակայն քանակի ավելացումն ինքնանպատակ չէ։ Մեր հիմնական խնդիրն է ամբողջ պտուղ-բանջարեղենը հասցնել սպառողին, ընդ որում բարձր որակով և համաչափ, ամբողջ տարվա ընթացքում։ Այդ նպատակով անհրաժեշտ է արագացնել գյուղատնտեսական մթերքների պահեստարանների կառուցման տեմպերը, կատարելագործել դրանց տեղաբաշխումը։

Որոշակի են հաջողությունները անասնապահության բնագավառում։ Ավելացել են անասունների ու թռչունների մթերումները, կովերի միջին կաթնատվությունը և հավերի ձվատվությունը, խոշոր եղջերավոր անասունների և խոզերի գլխաքանակը։ Չնայած դրան, անասնապահության վիճակը դեռևս մնում է լարված։ Ընթացիկ տարվա անցած չորս ամիսներին, 1983 թ. համեմատությամբ, 14 շրջաններում նվազել է կաթի արտադրությունը, 16 շրջաններում՝ կովերի կաթնատվությունը։ Անբավարար է իրագործվում կովերի գլխաքանակի ավելացման և հոտի կառուցվածքի բարելավման մասին ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշումը։ Ազիզբեկովի, Ամասիայի, Արագածի, Արարատի, Գուգարքի, Ղուկասյանի, Մարտունու, Մեղրու, Նոյեմբերյանի, Հրազդանի, Ստեփանավանի և Թումանյանի շրջանների տնտեսություններում անցած չորս ամիսներին կովերի գլխաքանակը, նախորդ տարվա համապատասխան



digitised by A.R.A.R.@

ժամանակաշրջանի համեմատությամբ, նույնիսկ կրճատվել է։ Պետք է ասել, որ հանրապետությունում կովերի գլխաքանակի ավելացման աշխատանքները տարվում են անսիստեմ, առանց հարցի անհրաժեշտ գիտական մշակման։ Այդ խնդրի լուծման հիմնական միջոցներն են մատղաշի աճեցման և հանրային հոտի ցեղատոհմային կազմի բարելավումը և կովերի ստերջության կրճատումը։ Կիրառվում է նաև այլ հանրապետություններից անասունների մուծման պրակտիկան, որը հետագայում ևս կշարունակվի։ Սակայն գյուղատնտեսության մինիստրությունը, առանձին շրջանների կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները հաճախ կովերի գլխաքանակի համալրման հիմնական միջոցը համարում են դրանք դրսում ձեռք բերելը։ Մինչդեռ այդ թանկարժեք անասունների զգալի մասը հետագայում չի օգտագործվում հոտի վերարտադրության համար և հանձնվում է սպանդի, ամենևին չհատուցելով կատարած ծախսումները։

Հոտի վերարտադրության նպատակով կոլտնտեսություններում ու սովխոզներում տարվող աշխատանքը դեռևս չի համապատասխանում առաջադրված խնդիրներին։ Երկար տարիներ հարյուր կովի հաշվով հորթերի գլխաքանակը չի անցնում 78-ից։ Այդ առումով գործերն առանձնապես վատ են Ամասիայի, Մեղրու, Կամոյի, Մասիսի, Ստեփանավանի շրջաններում։

Մսի ռեսուրսների համալրման կարևոր ռեզերվ են քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունները, որտեղ մշտապես աճում է անասնագլխաքանակը։ Չնայած դրան, այդ կարևոր գործում ևս անելիքները քիչ չեն։ Բավական է նշել, որ ներկայումս գյուղական ընտանիքների կեսից ավելին անասուն չի պահում։ Շատ են այդպիսի ընտանիքներն առանձնապես Արարատյան դաշտի շրջաններում։ Գյուղատնտեսության մինիստրությունը, տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է անհրաժեշտ պայմաններ ստեղծեն, որպեսզի յուրաքանչյուր գյուղական ընտանիք ձեռք բերի անասուն և մասնակցի պարենամթերքի արտադրության համաժողովրդական գործին։ Մսի, կաթի և մյուս գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման նպատակով անհրաժեշտ է ընդլայնել արդյունաբերական, շինարարական և մյուս ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները։

Հանրապետությունում մշակվել և իրականացվում է կերարտադրության հետագա ինտենսիվացման, բոլոր կերահանդակների արդյունավետության բարձրացման, ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման լայն ծրագիր։ Ընթացիկ հնգամյակի առաջին տարիների արդյունքները ցույց են տալիս, որ նկատելիորեն ամրապնդվել է անասնապահության կերի բազան։ Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում ամեն տարի կուտակվում է մոտ 2,5 միլիոն տոննա կոշտ և հյութալի կեր։ Սակայն ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի առաջադրած խնդիրների լույսի ներքո գնահատելով կերարտադրության ձեռք բերված մակարդակը, այն դեռևս չի կարելի բավարար համարել։ Շատ շրջաններում դանդաղ է արմատավորվում կերակուտակման և կենդանիների կերակրման առաջավոր տեխնոլոգիան, պատշաճ ուշադրություն չի նվիրվում ըստ սպիտակուցի և մյուս բաղադրամասերի կերաբաժինների հաշվեկշռմանը, մեծ են կորուստները կերի կուտակման, պահպանման ու վերամշակման պրոցեսում, պատշաճ ուշադրություն չի հատկացվում կերի որակին, թույլ են տրվում կերի սննդարարության մեծ կորուստներ։ Կերի բազայի ամրապնդումը անասնապահության զարգացման հիմնական պայմանն է։ Այսօր խնդիրը երեք միլիոն տոննա բարձրորակ կեր կուտակելն է, կերարտադրության ավելի արագ զարգացումը, ֆերմաներին երաշխավորված քանակի ու տեսականու լիարժեք կերի մատակարարումը։

Պարենային ծրագրի առաջադրանքների կատարման գործում դրական տեղաշարժեր կան վերամշակող արդյունաբերության ճյուղերում, որոնց աշխատավորական կոլեկտիվների ջանքերով 1983 թ. և ընթացիկ տարվա 4 ամսում պլանից ավելի արտադրվել և իրացվել է ավելի քան 50 միլիոն ռուբլու արտա-



դրանք։ Սակայն այստեղ նույնպես կան շատ թերություններ ու վրիպումներ։ Չի ապահովված արտադրության հստակ ռիթմը։ Տասը ձեռնարկություններ չեն կատարել արտադրանքի իրացման պլանը և պակաս են իրացրել ավելի քան 2,5 միլիոն ռուբլու արտադրանք, ութ ձեռնարկություններ ու միավորումներ ձախողել են կնքված պայմանագրերի հիման վրա արտադրանքի մատակարարումը՝ 2,6 միլիոն ռուբլի գումարով։

Ընթացիկ տարում մեկ տոկոսով աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման ու 0,5 տոկոսով արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման խնդիրը դարձել է արտադրության ռեզերվների մոբիլիզացման աստիճանի գնահատման չափանիշ։ Անհրաժեշտ է, որ կուսակցության առաջադրանքի կատարման համար մղվող պայքարի մեջ ներգրավվեն բոլոր աշխատավորական կոլեկտիվները։ Չնայած մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունում որոշել են աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մեկ տոկոսով, սակայն ձեռնարկությունների մեկ երրորդը նույնիսկ իջեցրել է աշխատանքի արտադրողականության աճի տեմպը, յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն բարձրացրել է արտադրանքի ինքնարժեքը։ Էական թերություններ կան նաև սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների և միավորումների գործունեությունում։

Վերոհիշյալ մինիստրությունների ձեռնարկություններում ընթացիկ տարվա 4 ամսում աշխատողների փաստական թվակազմը, պլանայինի համեմատությամբ, գերազանցել է 484 մարդով։ Շատ են աշխատաժամանակի կորուստները, մեծ է կադրերի հոսունությունը։

Ագրոարդյունաբերական համալիրի շրջանակներում ամրապնդվում են ձեռնարկությունների գործարար կապերը կոլտնտեսությունների և սովխոզների հետ։ Ավելի կոնկրետ և ավելի օպերատիվ են լուծվում գյուղատնտեսական արտադրանքի մթերումների և ընդունման հարցերը։ Շրջանային ագրոարդյունաբերական շատ միավորումներ վերահսկում են անասնապահական մթերքները վերամշակման հանձնելու գրաֆիկների կիրառումը, որը նպաստում է արդյունաբերության համաչափ աշխատանքին։

Միևնույն ժամանակ ճյուղերի շատ ձեռնարկությունների ղեկավարներ նախաձեռնություն հանդես չեն բերում պարտնյորների հետ կապերն ամրապնդելու գործում, վերևից սպասելով ցուցումների, դանդաղ են լուծում մթերումների և վերամշակման համակարգի կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործման հարցերը։ Ցավոք, մենք դեռ հիմնականում օգտագործում ենք մակերեսին եղած, այսպես ասած, ձեռքի տակ գտնվող ռեզերվները, իսկ արդյունավետորեն տնտեսավարել դեռ չենք սովորել։

Ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերի բոլոր աշխատողների անհետաձգելի խնդիրն է՝ պահպանել և սպառողին անկորուստ հասցնել ամբողջ թողարկված արտադրանքը։

Շուրջ մեկուկես տարի է, ինչ գործում են կառավարման նոր մարմինները՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական համալիրի հարցերի հանձնաժողովը և շրջանային ագրոարդյունաբերական միավորումները։ Սակայն արդեն կարելի է ասել, որ դրանց ստեղծումը բարերար ազդեցություն ունեցավ. գյուղատնտեսության և համալիրի մյուս ճյուղերի փոխհարաբերությունների վրա. ավելի օպերատիվորեն են լուծվում միջգերատեսչական հարցերը, կառավարումն առավել մեծ չափով է հենվում արտադրության վրա ներգործող տնտեսական լծակների վրա։ Նկատելիորեն ամրապնդվում է շատ կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, բարելավվում է վերամշակող արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը։

Դրա հետ մեկտեղ, ինչպես նշվեց համամիութենական և հանրապետական տնտեսագիտական խորհրդակցություններում, գյուղում կառավարման նոր մարմինների գործունեության վերակառուցումը դանդաղ է ընթանում։



digitised by A.R.A.R.@

Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդների աշխատանքում էական թերություններից մեկն այն է, որ դրանք դեռևս լրիվ չափով չեն օգտագործում իրենց տրված իրավունքները։ Շրջանային ագրոարդյունաբերական միավորումները կոչված են զբաղվելու պարտնյորների՝ «Գյուղտեխպետկոմի», «Գյուղքիմիայի», ջրատնտեսական և այլ մարմինների տնտեսական փոխհարաբերությունների կարգավորման հարցերով։ Դա հիմնականում իրականացվում է գյուղատնտեսական ձեռնարկություններին ցույց տրվող սպասարկումների վարձաչափերի ու տարիֆների միջոցով։ Այդ հարցերը կարգավորվում են «Ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ գյուղատնտեսության տնտեսական փոխհարաբերությունների կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ, որի ընդունումից շուրջ մեկուկես տարի է անցել։ Բայց հանրապետությունում ոչ մի շրջանային ագրոարդյունաբերական միավորում դեռևս չի վերանայել գործող տարիֆները։ Մինչդեռ կոլտնտեսություններից ու սովխոզներից հաճախ գանգատներ են ստացվում այն մասին որ պարտնյորների կատարած աշխատանքները թանկ են նստում, ուստի շատ տնտեսություններ ի վիճակի չեն կամ էլ նպատակահարմար չեն գտնում օգտվելու նրանց ծառայություններից։

Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները գործնական վերահսկողություն չեն սահմանել տեխնիկայի նորոգման ու սպասարկման, ագրոքիմիական ծառայության, ոռոգիչ ցանցերի մաքրման և պարտնյորների կատարած մյուս աշխատանքների որակի նկատմամբ։ Ագրոարդյունաբերական համալիրի բոլոր պարտնյորների ներդաշնակ աշխատանքի վրա ազդեցությունն ուժեղացնելու նպատակով շրջանային միավորումներին իրավունք է տրված ստեղծել արտադրության զարգացման, նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության կենտրոնացված ֆոնդեր։ Այդ ֆոնդերի հաշվին կարելի է կառուցել արտադրանքի վերամշակման, կերարտադրության և այլ կարևորագույն օբյեկտներ։ Սակայն գործը նախանշումներից այն կողմ առայժմ չի անցնում։ Մինչդեռ նման օբյեկտները կարող են ստեղծվել նաև կապիտալ շինարարության լիմիտներից դուրս։

Շրջանային միավորումների խորհուրդները դեռևս վեհերոտ են օգտագործում ագրոարդյունաբերական համալիրի՝ որպես միասնական ամբողջության, պլանավորման, նյութատեխնիկական մատակարարման, ֆինանսական և նյութական ռեսուրսների մի մասի վերաբաշխման բնագավառում իրենց տրված իրավունքները։ Այս բոլոր հարցերի լուծման գործում շրջանային ագրոարդյունաբերական միավորումները պետք է հանդես բերեն ավելի մեծ համարձակություն և բոլոր պարտնյորների նկատմամբ պահանջկոտություն, պետք է հստակորեն կազմակերպեն միջգերատեսչական հանձնաժողովների աշխատանքը, հասնեն միավորման խորհրդի բոլոր որոշումների պարտադիր կատարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումների կենսագործումը դրական ազդեցություն ունեցավ կոլտնտեսությունների ու սովխոզների, առանձնապես հետ մնացող տնտեսությունների տնտեսական ցուցանիշների բարելավման վրա։ Չնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների 85 տոկոսը 1983 թ. ավարտեց շահույթով։ Վնասով աշխատող տնտեսությունների թիվը կրճատվեց 2,7 անգամ, վնասների գումարը՝ 2,9 անգամ։ Զուտ շահութաբերության հասան Ապարանի, Գորիսի, Կալինինոյի, Սպիտակի և Էջմիածնի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները։

Անցյալ տարի հանրապետության կոլտնտեսությունների համախառն եկամուտն ավելացավ 6,1, իսկ աշխատանքի վարձատրության ծախսումները՝ 2,5 տոկոսով։ Ընդ որում աշխատանքի վարձատրության համար ծախսումների տեսակարար կշիռը համախառն եկամուտի մեջ, նախորդ տարիների համեմատությամբ, նվազեց 4 տոկոսով և կազմեց 67,5 տոկոս։ Միաժամանակ, եթե 1982-ին կոլտնտեսությունները կուտակման համար հատկացրել էին 23,9 միլիոն ռուբլի կամ զուտ եկամտի 60,9 տոկոսը, ապա 1983 թվականին՝ համապատասխանաբար՝ 30,9 միլիոն ռուբլի կամ զուտ եկամտի 62,2 տոկոսը։ Բարձրացել է նաև կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը։

Հատկանշական է, որ կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդումը հիմնականում գնման գների բարձրացումից և դրանց հավելումների սահմանումից ստացված լրացուցիչ դրամամուտքը արտադրության ինտենսիվացմանը հատկացնելու, ընդլայնված վերարտադրության ապահովման արդյունք է, ինչպես դա նախատեսված է կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումի և դրան հաջորդած պլենումների որոշումներով։ Համանման են տնտեսական ու սոցիալական տեղաշարժերը նաև սովխոզներում։

Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները, սովխոզների մեծ մասը արդյունավետ ու նպատակային են օգտագործել լրացուցիչ հատկացված ռեսուրսները։ Հանրապետությունում 400 սովխոզներ անցած տարի աշխատեցին շահույթով, մինչդեռ 1982 թ. առանց վնասի աշխատել էին ընդամենը 240 սովխոզ։

Գնման նոր գների և դրանց հավելումների սահմանումը բարերար ազդեցություն ունեցավ առաջին հերթին նախալեռնային և լեռնային գոտիների տնտեսությունների էկոնոմիկայի վրա։ Գյուղատնտեսության մինիստրության համակարգում ստացված լրացուցիչ 63,3 միլիոն ռուբլի դրամամուտքից 52,2 միլիոնը հատկացվեց լեռնային և նախալեռնային շրջանների տնտեսություններին, որը հնարավորություն ընձեռեց նկատելիորեն ամրապնդելու բնատնտեսական դժվարին պայմաններում աշխատող տնտեսությունների ֆինանսատնտեսական վիճակը։ Այնուամենայնիվ 1983 թ. 7 կոլտնտեսություններ և 91 սովխոզներ աշխատեցին վնասով, իսկ վնասների գումարը կազմեց 20 միլիոն ռուբլի։ Արտադրության պլանները չկատարելու, աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսներն անարդյունավետ օգտագործելու հետևանքով Արարատի շրջանի սովխոզներում արտադրանքի ինքնարժեքը մեծացավ 50 տոկոսով, Հրազդանի շրջանում 30, Ամասիայում՝ 26։ Արագածի շրջանի Ալագյազի սովխոզում մեկ ցենտներ բրդի ինքնարժեքը կազմեց 1.114, Գեղարոտի սովխոզում՝ 823 ռուբլի, այնինչ պլանով նախատեսված էր համապատասխանաբար՝ 623,7 և 570 ռուբլի։ Վերոհիշյալ տնտեսություններում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը կազմեց համապատասխանաբար՝ 64,4 և 44,3 ռուբլի։ Այստեղ ի՞նչ շահութաբերության մասին կարող է խոսք լինել։

«Հայթռչնարդի» համակարգում անցյալ տարի ճտերի արտադրությունը կազմել է 61,5 տոկոս, որի հետևանքով պլանավորվածից պակաս է ստացվել 4,1 միլիոն ճուտ, ընդ որում թույլ է տրվել 2,8 միլիոն ռուբլու կերի գերածախս և արտադրանքի 6,6 միլիոն ռուբլու թանկացում։ Շիրակի թռչնաֆաբրիկայի վնասները կազմել են 1,2 միլիոն ռուբլի, Ջրառատինը՝ 0,9 միլիոն, Նոր Խարբերդինը՝ 0,7 միլիոն ռուբլի։

Ի՞նչ է ստացվում։ Ծախսվում են ցանքերի և անասունների խնամքի համար պլանով նախատեսված միջոցները, իսկ ակնկալվող արտադրանքը չի ստացվում։ Կուտակվում են արտադրամիջոցները, աճում են ծախսերի ամորտիզացիոն գումարները, իսկ համապատասխան հատույց չկա։ Աշխատանքի արտադրողականությունը կամ ամենևին չի աճում, կամ էլ աճում է աննշան։

Այս ամենը ոչ գրագետ տնտեսավարման, անփութության, տնտեսությունների շատ ղեկավարների ու մասնագետների անպատասխանատվության հետևանք է։ Ուրիշ էլ ինչով բացատրել, երբ միևնույն բնակլիմայական պայմաններում հարևան տնտեսությունները հակադիր վերջնական արդյունքներն են ստանում։ Ապարանի շրջանի Ծաղկաշեն գյուղի կոլտնտեսությունը 1983 թ. մեկ հեկտարից ապահովեց 30,9 ցենտներ հացահատիկ, 41 ցենտներ բազմամ-





digitised by A.R.A.R.@

յա խոտաբույս, մեկ կովից՝ 2.854 կիլոգրամ կաթ, արտադրության շահութաբերությունը հասցնելով 22,9 տոկոսի։ Իսկ հարևան Քուչակ գյուղի կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը կազմեց 21,1, խոտինը՝ 32,6 ցենտներ, մեկ կովի կաթնատվությունը՝ 1.730 կիլոգրամ, իսկ շահութաբերությունը՝ ընդամենը 5,4 տոկոս։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև ուրիշ շրջաններից։ Հիրավի, ոչ մի հավելում ի վիճակի չէ ծածկել անտնտեսվարության և անճարակ ղեկավարման հետևանքով թույլ տրված կորուստները։ Այս առնչությամբ տեղին է հիշել ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի խոսքերը. «Լավ կազմակերպված համառ աշխատանքը նույնիսկ դժվարին պայմաններում տալիս է իր պտուղները»։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումներով նախանշված տնտեսավարման նոր պայմաններում այսօր օրինաչափ է առաջադրել կոլտնտեսությունների ու սովխոզների վնասաբերության լիակատար վերացման խնդիրը։ Ագրոարդյունաբերական համալիրի մինիստրություններն ու գերատեսչությունները, կուսակցական կոմիտեները, սովետական ու տնտեսական մարմինները հենց այդ ուղղությամբ պետք է կազմակերպչական ու գործնական ակտիվ աշխատանք ծավալեն։

Վերլուծելով ագրոարդյունաբերական համալիրի էկոնոմիկայի ամրապնդման հանգուցային հարցերը, համամիութենական և հանրապետական տընտեսագիտական խորհրդակցություններում նշվեց, որ չի կարելի ինտենսիվացման պրոցեսը հանգեցնել միայն ֆոնդերի կուտակմանը։ Ինտենսիվացման գործում գլխավորը առկա և նոր ստացվող նյութական ու ֆինանսական միջոցների միավորից արտադրանքի ըստ ամենայնի ավելացումն է։ Հսկայական միջոցներ են ներդրվում մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նպատակով։ Տնտեսություններն ստանում են մեծ քանակությամբ նոր տեխնիկա, ընդլայնվում են կապիտալ շինարարության մասշտաբները։ Բայց այդ գործում միշտ չէ, որ տնտեսական ճշգրիտ հաշվարկ է կատարվում ակնկալվող հատույցի մասին։ Մեզանում հաճախ մրցության հաղթողների շարքում տեսնում ենք այնպիսի տնտեսություններ ու շրջաններ, որոնք կատարել են մեծ կապիտալ ներդրումներ, բայց առանց պատշաճ հատույցի ապահովման որոշ չափով ավելացրել են արտադրանքի թողարկումը։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և հետագա պլենումները մեծ նշանակություն տվեցին կոլեկտիվ կապալի լայն ներդրմանը՝ որպես գյուղատնտեսության աշխատողների ակտիվության բարձրացման, կարգապահության ու տնտհաշվարկի ամրապնդման, պարենային ծրագրի հաջող կատարման կարևորագույն միջոցի։ Փորձը ցույց է տալիս, որ կապալային բրիգադներն ու օղակները, աշխատելով միանման պայմաններում, հողատարածության միավորից 20—30 տոկոսով ավելի շատ արտադրանք են ստանում։ Այդ կոլեկտիվներում զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, ցածր է արտադրանքի ինքնարժեքը, խնայողաբար են ծախսվում նյութական ու հումքային ռեսուրսները։ Կոլեկտիվ կապալով աշխատող բրիգադների և օղակների աշխատանքի դրական օրինակներ կարելի է բերել Աշտարակի, Կամոյի անվան, Արագածի, Գորիսի, Կրասնոսելսկի, Նաիրիի, Սիսիանի, Էջմիածնի և այլ շրջաններից։ Դրա հետ մեկտեղ Ազիզբեկովում, Արարատում, Շամշադինում և այլուր կոլեկտիվ կապալը տակավին դանդաղ է արմատավորվում։

Նման դրության հիմնական պատճառն այն է, որ կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները, շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդներն ակտիվորեն չեն ղեկավարում կոլեկտիվ կապալի արմատավորման պրոցեսը, լայնորեն չեն պրոպագանդվում աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր ձևերի առավելությունները։

Գյուղում ստեղծված արտադրական պոտենցիալի արդյունավետ օգտագործումը, արտադրության ու տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների ներդրումն ամենից առաջ պայմանավորված է կադրերի աշխատանքով և



վերջնական արդյունքի համար նրանց պատասխանատվությամբ։ Վերջին տարիներս հանրապետությունում քիչ բան չի արված ագրոարդյունաբերական համալիրի ձեռնարկությունների ղեկավարությունը որակյալ կադրերով ամրապնդելու նպատակով։ Դրա հետ մեկտեղ կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողների առանձին կատեգորիաների որակական կազմը չի համապատասխանում արդի պահանջներին։

«Մենք պետք է հետևողականորեն հասնենք այն բանին,— ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. հունվարյան պլենումում ասաց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— որ բոլոր մակարդակների կադրերը միշտ քննադատաբար վերաբերվեն իրենց աշխատանքի արդյունքներին, մշտապես պատասխանատվություն զգան նախատեսվածը, հանձնարարվածը ժամանակին ու որակով կատարելու համար»։

Կուսակցության շրջանային կոմիտեները, ելնելով էկոնոմիկայի գյուղատնտեսական հատվածի նկատմամբ կուսակցության արդի պահանջներից, կոչված են առավել բարձրացնելու կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակը, բարելավելու աշխատանքի ոճն ու մեթոդները։ Իրենց գործունեության մեջ չփոխարինելով տնտեսական մարմիններին, նրանք պետք է տեսնեն ոչ միայն շրջանի, այլև յուրաքանչյուր կոլտընտեսության, սովխոզի, նրանց ստորաբաժանումների զարգացման հեռանկարները։

Կյանքն ավելի մեծ պահանջներ է առաջադրում սկզբնական կուսակցական կազմակերպություններին, որոնք աշխատավորական կոլեկտիվների քաղաքական կորիզն են։ Նրանց ակտիվությամբ, ձեռներեցությամբ է մեծապես պայմանավորված կուսակցության ու կառավարության որոշումներով գյուղի առջև բացված մեծ հնարավորությունների լրիվ օգտագործումը։

Հանրապետության աշխատավորները, լայնորեն ծավալելով տասնմեկերորդ հնգամյակի չորրորդ տարվա պլաններն ու պարտավորությունները հաջողությամբ կատարելուն նպատակամղված սոցիալիստական մրցությունը, արժանի ավանդ կներդնեն պարենային ծրագրի իրականացման համաժողովրդական գործում։

digitised by A.R.A.R.@

# ՄԱՐԴՈՒ ԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ՓՈԽՆԵՐԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱ-ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՆ

**Մ. ՄՉԵԴԼՈՎ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր, ՌՍՖՍՀ գիտության վաստակավոր
գործիչ

*Մեր ԺԱՄԱՆԱԿՆԵՐՈՒՄ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ և բնության փոխներգործության վրա է բևեռված զանազան կառավարությունների և քաղաքական կուսակցությունների, միջազգային կազմակերպությունների և գործարար շրջանների, բնական և հումանիտար գիտությունների ներկայացուցիչների և, վերջապես, համաշխարհային հասարակայնության ամենալայն խավերի հարաճուն ուշադրությունը։*

*Էկոլոգիական քաղաքականության իրականացման գործում սոցիալիստական երկրները հենվում են մարքսիզմ-լենինիզմի վրա, որը հասարակության կենսագործունեության բոլոր կողմերը դիտում է նրանց փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ։ Գիտական կոմունիզմի դասականների տեսական ժառանգության վերլուծությունը ցույց է տալիս, որ հասարակության և բնության փոխհարաբերությունների մասին նրանց ստեղծած ուսմունքը մեր օրերում ևս էկոլոգիական պրոբլեմների լուծման մեթոդաբանական հուսալի հիմք է, իմացության հզոր զենք մարքսիստ գիտնականների ձեռքում, չնայած այն «սահմանափակ» ու «հնացած» հայտարարելու բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսների բոլոր փորձերին։*

*Հայտնի է, որ հասարակության և բնության փոխներգործության պրոբլեմների մշակումը Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը իրականացնում էին իրենց ստեղծարար ողջ գործունեության ընթացքում։ Կ. Մարքսը այդ հարցերով առանձնապես ակտիվորեն զբաղվում էր պատմության մատերիալիստական ըմբռնման և իր տնտեսագիտական ուսմունքի մշակման կապակցությամբ։ Ծանոթանալով Կ. Մարքսի աշխատությունների նախապատրաստական և սևագիր ձեռագրերին, մենք համոզվում ենք, որ մարդու և բնության փոխհարաբերությունների պրոբլեմի հետ կապված նրա առաջադրած դրույթներից յուրաքանչյուրի մշակմանը նախորդել է վիթխարի նախապատրաստական աշխատանք, մեծ քանակությամբ ստեղծագործաբար վերամշակված գրականություն քաղաքատնտեսության, տեխնիկայի պատմության, մշակույթի պատմության, նախնադարյան պատմության, ռուսական և ամերիկյան հողային հարաբերությունների, երկրաբանության, կլիմայագիտության, կենսաբանության, մարդաբանության, ֆիզիոլոգիայի, ագրոքիմիայի և այլ բնագավառների վերաբերյալ։*

*Հասարակության և բնության փոխներգործության մասին մարքսիստական ուսմունքում ծանրակշիռ ավանդ է մուծել Ֆ. Էնգելսը։ Նրա այնպիսի նշանավոր աշխատություններ, ինչպիսիք են* Անտի-Դյուրինգը, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Բնության դիալեկտիկան *գաղափարների իսկական գանձարան են, որոնց մեթոդաբանական նշանակությունը հասարակության և բնության փոխներգործության ընդհանուր տեսության ստեղծման համար անգնահատելի է։*



*Հասարակության և բնության փոխներգործության գիտական ըմբռնումը հետագայում զարգացվեց Վ. Ի. Լենինի աշխատություններում։ Վլադիմիր Իլյիչը մեծ ուշադրություն է նվիրել բնության պահպանության ոչ միայն տեսական, այլև գործնական խնդիրներին։ Նա շատ բան է արել՝ մշակելու համար բնական հարստությունների խելացի շահագործման այն համակարգի հիմունքները, որը աշխարհի շատ գիտնականներ այժմ գնահատում են որպես բնության համապարփակ օգտագործման մոդել։*

*Վ. Ի. Լենինի՝ որպես աշխարհում առաջին սոցիալիստական պետության ղեկավարի, ողջ գործունեությունը մարդու և բնության փոխհարաբերությունների մարքս-լենինյան ըմբռնումը գործնականորեն կիրառելու օրինակ է։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո առաջին իսկ տարիներին հրատարակվել է մոտ 100 դեկրետ, որոնք կապված են հանրապետության բնության, նրա հողի, անտառների, ընդերքի, ջրային ռեսուրսների և կենդանական աշխարհի պահպանության գործի հետ։ Վլադիմիր Իլյիչը անձամբ ինքն էր ստորագրում այդ փաստաթղթերից շատերը, որոնք վկայում են, թե այդ գործում նա ինչպիսի մեծ նշանակություն էր տալիս գիտությանը։ Այդ թեմաների շուրջ նա բազմիցս զրույցներ է ունեցել գիտնականների, այդ թվում՝ լուսավորության ժողովրդական կոմիսարիատի գիտության գլխավոր վարչության պետ Ֆ. Ն. Պետրովի հետ, վերջինիս ուշադրությունը հատկապես հրավիրելով բնության պահպանության գործը գիտական հիմնարկությունների զարգացման նոր խնդիրների հետ կապելու անհրաժեշտության վրա, մեծ ուշադրություն էր նվիրում երկրի բնական արտադրաուժերն ուսումնասիրող համառուսաստանյան հանձնաժողովի աշխատանքի պրոբլեմներին, հանձնաժողով, որը մեծ աշխատանք էր կատարել բնական ռեսուրսները հաշվի առնելու և դրանց օգտագործումը կարգավորելու համար։*

*Օգտագործված հարուստ և բազմապիսի բնագիտական նյութը, շարժման սոցիալական ձևի խոր վերլուծությունը, գիտական մեթոդաբանությունը և վերլուծական փայլուն ընդունակությունները մարքսիզմ-լենինիզմի դասականներին հնարավորություն ընձեռեցին նկատելու այն ժամանակ նոր միայն նշմարվող միտումները և բացահայտելու հասարակության ու բնության փոխհարաբերությունների էությունը, մեխանիզմը, նրանց պատմական փուլերը և ապագան, զանազան հասարակական-տնտեսական ֆորմացիաներում այդ փոխհարաբերությունների բնույթը որոշող գործոնները, այդ փոխհարաբերությունների դերը հասարակության կյանքում և հասարակության տեղը բնության էվոլյուցիայի պրոցեսում, համակողմանիորեն հիմնավորելու հասարակության և բնության միասնության մասին դրույթը։*

*Մարքսիզմ-լենինիզմի դասականները հասարակությունը և բնությունը անփոփոխ կերպով դիտել են որպես իր զարգացման մեջ մի շարք փուլեր ապրած մեկ համակարգի երկու կողմեր։ Այդ հասարակական-բնական համակարգում փոխներգործության միջոցով իրականացվում է յուրատեսակ մի միասնություն, որը տեղի է ունենում, ամենից առաջ, հասարակության վերափոխիչ գործունեության ընթացքում։*

*Բնության պատմության և մարդկանց պատմության դիալեկտիկական միասնությունը դրսևորվում է ոչ միայն այն բանում, որ մարդկային պատմությունն իսկ* «բնության պատմության, *բնության մարդայնացման պատմության իրական մասն է»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 42, стр. 124), *այլև այն բանում, որ բնության հետ հասարակության փոխհարաբերությունների էվոլյուցիան, բնության վերափոխումը դառնում են մարդու, նրա գիտակցության զարգացման և բուն մարդկային պատմության հիմքը։ «...Մարդկային մտածողության ամենաէական ու մերձավորագույն հիմքը հենց* բնության փոփոխումն է մարդու կողմից, *այլ ոչ թե միայն բնությունն իբրև այդպիսին,—*



digitised by A.R.A.R.@

հիմնական օբյեկտներն են եղել նրան շրջապատող միջավայրի մեխանիկական, ֆիզիկական, քիմիական, կենսաբանական որոշ հատկությունները կամ այդ միջավայրի առանձին բաղադրամասերը։ Մեր օրերում, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, բնության վրա մարդու ներգործության մասշտաբների շեշտակի աճի կապակցությամբ, որպես փոփոխությունների օբյեկտ հանդես է գալիս ողջ կենսոլորտը։ Հասարակության և բնության հարաբերությունների արդի վիճակի համար բնորոշ է բնականի ու արհեստականի, մարդկայինի միջև եղած շեշտված սահմանների վերացումը։

Նշելով բնության ավելի ու ավելի լայն, խոր ու համակողմանի յուրացման միտումը, որը հատուկ է մարդկային գործունեությանը, Մարքսը և Էնգելսը շեշտում էին, որ բնությունն այժմ «արդյունաբերության և հասարակական կացության արգասիք է, ընդ որում այն իմաստով, որ դա պատմական արդյունք է, մի ամբողջ շարք սերունդների գործունեության հետևանք...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 42)։

Մարքսիզմ-լենինիզմի դասականները՝ իրենց հատուկ կուսակցականությամբ, պրոլետարիատի, ժողովրդական զանգվածների, ողջ մարդկության շահերի հետևողական պաշտպանությամբ իրականացրել են ցարդ օրինակ ծառայող այնպիսի պրոբլեմների վերլուծությունը, ինչպիսիք են հասարակական առաջընթացը և բնությունը, գիտության ու տեխնիկայի զարգացման ազդեցությունը բնական միջավայրի վրա, բնության տեղը և վերաբերմունքը նրա նկատմամբ հասարակական-տնտեսական զանազան ֆորմացիաներում։ Այս պրոբլեմների վերլուծության համար վճռական նշանակություն ունեցավ բնության նկատմամբ մարդկանց հարաբերության և միմյանց նկատմամբ նրանց հարաբերությունների միասնության հայտնագործումը Մարքսի և Էնգելսի կողմից։ Առաջին անգամ այդ միտքն արտահայտվել է Գերմանական գաղափարախոսություն աշխատության մեջ, որտեղ նշվում է, որ «որոշակի հարաբերությունը բնության նկատմամբ պայմանավորվում է հասարակության ձևով, և հակառակը» (Նույն տեղը, էջ 29)։

Իրենց աշխատություններում, քննության առնելով այնպիսի պրոբլեմներ, ինչպիսին են հասարակական հարաբերությունների համակարգում բնության նկատմամբ վերաբերմունքի տեղը, դրա կապը հասարակական կյանքի այլ երևույթների հետ, մարքսիզմի հիմնադիրները հանգեցին այն հետևության, թե «մարդկանց հարաբերությունը բնությանը» և «նրանց հարաբերությունները միմյանց նկատմամբ» կազմում են ներքուստ ամբողջական մի համակարգ, որը ենթադրում է արտադրության որոշակի տիպ և որոշվում է վերջին հաշվով արտադրաուժերի զարգացման մակարդակով ու բնույթով։ «...Նյութական արտադրության որոշակի ձևից,— նշում էր Մարքսը Կապիտալում,— բխում է, նախ, հասարակության որոշակի կառուցվածք, երկրորդ, մարդկանց որոշակի հարաբերություն բնության նկատմամբ։ Նրանց պետական կարգը և նրանց հոգևոր կերտվածքը որոշվում են ինչպես մեկով, այնպես էլ մյուսով։ Հետևաբար, դրանով էլ որոշվում է նաև նրանց հոգևոր արտադրության բնույթը»։

Այդ հայտնագործությունն իսկ Մարքսին և Էնգելսին հնարավորություն ընձեռեց զատելու հասարակության և բնության փոխհարաբերությունների հիմնական փուլերը, որոնք համապատասխանում են մարդկային հասարակության պատմության բաժանմանը հասարակական-տնտեսական ֆորմացիաների։ Մարդկային պատմության նախնական փուլի համար բնորոշ է մարդկանց անօգնականությունը բնության ուժերի հանդեպ, կույր ենթարկումը նրա օրենքներին, իսկ հասարակությունը դեռ մի համակարգ է՝ բնական դետերմինացման գերակշռությամբ։ Բնությունն այդ ժամանակաշրջանում «հակադրվում է մարդկանց որպես միանգամայն խորթ, ամենազոր ու անմատչելի ուժ, որին մարդիկ վերաբերվում են միանգամայն կենդանաբար և որի ուժին նրանք ենթարկվում են անասունների նման... Այստեղ, ինչպես և ամենուրեք, բնության և մարդու նույնությունը երևան է գալիս նաև այն բանում, որ մարդկանց սահմանափակ վերաբերմունքը բնությանը պայմանավորում է նրանց սահմանափակ վերաբերմունքը միմյանց նկատմամբ, իսկ նրանց սահմանափակ



վերաբերմունքը միմյանց նկատմամբ՝ նրանց սահմանափակ վերաբերմունքը բնությանը...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 29)։ Տիրապետում է մարդու բացարձակ սերտաճում նրա գոյության բնական պայմանների հետ, «մարդու վերաբերմունքը արտադրության նրա բնական պայմաններին՝ որպես իրեն պատկանող պայմանների, ...որպես այնպիսի նախադրյալների, որոնք տրված են նրա սեփական գոյության հետ միասին,— վերաբերմունքը նրանց՝ որպես նրա իսկ բնական նախադրյալների, որոնք կազմում են, այսպես ասած, լոկ նրա մարմնի շարունակությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. I, стр. 480)։

Ստրկատիրական և ֆեոդալական կարգերին ևս բնորոշ է բնության ընկալումը որպես մարդու անօրգանական մարմնի, կյանքը՝ գերազանցապես բնության հետ հաղորդակցման մեջ։ Հասարակության զարգացման հիմքը կրում է գերազանցապես, այսպես ասած, բնական բնույթ։ Անասնապահությունը և հողագործությունը, որոնք արտադրական գործունեության հիմնական ձևերն էին այդ ժամանակաշրջանում, ըստ էության, մարդկային աշխատանքի օգնությամբ բնության արդյունքների մեծացման մեթոդներն էին միայն։ Միևնույն ժամանակ մարդու անջատումը արտադրապայմաններից, նրա իսկ վերածումը այդ պայմաններից մեկի, իրական նախադրյալներ ստեղծեցին բնությունից մարդու օտարման համար, որը առաջացել է մասնավոր սեփականության և փողի երևան գալու հետ։ «Փողը բոլոր իրերի համընդհանուր, որպես ինչ-որ ինքնուրույն կերպով սահմանված արժեքն է։ Ուստի այն ամբողջ աշխարհը՝ ինչպես մարդկային աշխարհը, այնպես էլ բնությունը զրկել է նրանց սեփական արժեքից...,— գրել է Մարքսը։— Հայացքը բնության նկատմամբ, որը ստեղծվում է մասնավոր սեփականության և փողի տիրապետության պայմաններում, իրական արհամարհանք է բնության նկատմամբ, դրա գործնական նվաստացում...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. I, стр. 410)։

Զարգացած, ավարտուն ձևով բնության օտարումը հատուկ է կապիտալիզմին։ Կապիտալում Կ. Մարքսը գրում էր այն «պրոցեսի մասին, որում բանվորների աշխատանքի հասարակական գծերը հակադրվում են նրանց որպես ինչ-որ, որոշ իմաստով, կապիտալացված բան... Նույն բանը, բնականաբար, տեղի է ունենում բնության ուժերի և գիտության հետ... բնության ուժերը և գիտությունը հակադրվում են բանվորներին որպես կապիտալի ուժեր», «որպես աշխատանքի շահագործման միջոցներ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 49, стр. 110, 111)։ Կապիտալիզմն այդպես մարդուց օտարում է ոչ միայն աշխատանքը և աշխատանքի արդյունքը, այլև բնությունը։

Գիտական սոցիալիզմի հիմնադիրների մոտ կան մի շարք հետաքրքրական մտքեր, որոնք բացահայտում են բնության նկատմամբ վերաբերմունքի նեղ սպառողական բնույթը կապիտալիզմի պայմաններում՝ որպես հումքի և էներգիայի մթերանոցի։ «Բնությունը,— նշում էր Մարքսը Քաղաքատնտեսության քննադատությունը աշխատության սևագիր ուրվագծում,— դառնում է սոսկ որպես առարկա մարդու համար, սոսկ օգտակար իր» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. I, стр. 387)։ Դա պայմանավորում է բնության նկատմամբ այն գիշատիչ վերաբերմունքը, որը հատուկ է կապիտալիզմին, որը ստեղծում է «բնական և մարդկային հատկությունների ընդհանուր շահագործման համակարգ»։

Շարունակելով և զարգացնելով այդ գաղափարները, Վ. Ի. Լենինը իր շատ երկերում հատուկ ուշադրություն է դարձրել բնության նկատմամբ կապիտալիզմի վերաբերմունքի գիշատչական, սպառողական բնույթին։ Այսպես, օրինակ, ՀԱՄԿԽ-ի կոմունիստական ֆրակցիայի նիստում ունեցած ելույթում Լենինը նշել է, թե «կապիտալիստական տնտեսության հիմնական հատկությունն այն է, որ այն անընդունակ է հոգալու ինչպես հողի, այնպես էլ բանվորական ուժի գիտականորեն ճիշտ շահագործման մասին» (ԵԼԺ, հ. 43, էջ 206)։

Բնական հարստությունների հափշտակումը կապիտալիզմի կողմից, որի մասին նշել են Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը, ինչպես նաև առանձին բնական կոմպլեքսների ու ռեգիոնների էկոլոգիական հավասարակշռության



digitised by A.R.A.R.@

խախտումը արդի պայմաններում վիթխարի չափերի է հասել՝ իր հետ բերելով կյանքի որակի շեշտակի վատթարացում, հատկապես քաղաքներում, շոշափելիորեն ազդել է աշխատավորների ֆիզիկական և հոգեկան վիճակի վրա: Միլիոնավոր քաղաքացիներ բուրժուական աշխարհում բախվում են այն բանի հետ, որ գործնականորեն արդեն զրկվել են բնության գրկում հանգստանալու, անտառի թարմ օդ շնչելու, լռության ու մենակության հաճույքը վայելելու, թռչունների ձայներն ու գետակի խոխոջյունը լսելու հնարավորությունից: Մինչդեռ շփումը բնության հետ անհաղթահարելի ու հարաճուն պահանջմունք է արդի մարդու համար, որը ապրում է մեծ քաղաքի արհեստական միջավայրում և գրեթե իր ամբողջ ժամանակն անց է կացնում բազմապիսի տեխնիկայի ու մարդկային վիթխարի զանգվածների կուտակումներում: Բայց այդ պահանջմունքի իրագործումը հողի մասնավոր սեփականության պայմաններում դժվար իրականանալի է:

Կապիտալիստական երկրների աշխատավորների համար ժամանակակից էկոլոգիական իրավիճակը դարձել է նրանց բուժման ու հանգստի ծախսերի աճի պատճառ, ազդել է նրանց առողջության, բարեկեցության և կենցաղի, քաղաքային բնակչության, հատկապես երեխաների ֆիզիկական և հոգևոր զարգացման վրա: Այդ իսկ պատճառով այսօր օրակարգի սուր հարց է դարձել, այսպես ասած, էկոլոգիական շահագործման պրոբլեմը: Աշխատավոր զանգվածները դրան պատասխանում են բազմաթիվ ելույթներով, որոնք հակաիմպերիալիստական պայքարի բնորոշ առանձնահատկությունն են դարձել զարգացած կապիտալիստական երկրներում: Շրջակա միջավայրի պահպանման համար մղվող պայքարն այժմ կարևոր տեղ է գրավում կապիտալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների գործունեության, արհմիութենական և երիտասարդական շարժման մեջ, դառնալով այն օղակներից մեկը, որոնք միացնում են կոմունիստական և համադեմոկրատական շարժումները: Այն հետագա հեռանկարներ է բացում խաղաղության և լարվածության թուլացման նպատակով մղվող պայքարի համաշխարհային ճակատի ընդլայնման համար, դառնում հակաիմպերիալիստական պայքարի սոցիալական բազայի աճի հիմք:

Ինչպես լայն հասարակայնության մշտական ճնշումը, այնպես էլ ամբողջ կառավարող դասակարգի շահերը, որը զգում է արտադրության նորմալ աշխատանքի համար բավարար քանակի ու որակի բնական ռեսուրսների պահանջ, կապիտալիստական պետություններին ստիպում են որոշ քայլեր իրականացնել շրջակա բնական միջավայրի հետ փոխհարաբերությունները կարգավորելու նպատակով: Մի շարք խոշոր կապիտալիստական երկրներում ստեղծվել են շրջակա միջավայրի պահպանության ազգային կառավարական կազմակերպություններ, այդ նպատակների համար հատկացվում են խոշոր գումարներ, մշակվում են միջավայրի առանձին բաղադրատարրերի որակի ստանդարտներ, կիրառվում է զանազան միջավայրերի նկատմամբ առավելագույն թույլատրելի կուտակումների համակարգ և այլն:

Կապիտալիստական պետությունների նման պրակտիկան օբյեկտիվ հիմք է ստեղծում միջազգային մասշտաբով շրջակա միջավայրի պահպանության հարցերի վերաբերյալ նրանց հետ կոնստրուկտիվ երկխոսության ու համագործակցության համար: Կարելի է ասել, որ էկոլոգիական պրոբլեմը մարդկությանն ստիպեց զգալու իր միասնությունը, նրան հիշեցրեց իր հարազատությունը մոլորակի կենդանի բնության հետ, օգնեց նույնիսկ որոշ չափով վերաիմաստավորելու այնպիսի հասկացություններ, ինչպիսին են «մարդկությունը» և «մարդասիրությունը», «առաջադիմությունը» և «սոցիալական բարիքը»:

Բնության վրա լայն ներգործությունը ռազմական նպատակներով, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներն իրականացրին Վիետնամում, հանգեցրեց այն բանին, որ համաշխարհային հասարակայնությունն սկսեց նոր ձևով նայել նաև շրջակա միջավայրի մաքրության և խաղաղության համար մղվող պայքարի փոխադարձ կապի պրոբլեմին: Ժողովուրդների ուշադրությունը հրավիր-



վել էր այն վտանգի վրա, որին շրջակա բնական միջավայրը ենթակա է ոչ միայն պատերազմական գործողությունների իրականացման դեպքում, այլև սպառազինությունների անընդմեջ մրցավազքի պայմաններում: Եվ ամենևին պատահական չէ, որ խաղաղության և շրջակա միջավայրի պահպանության համար մղվող պայքարը մեր օրերում ի մի է ձուլվել Արևմուտքում՝ իրենց շարքերում միլիոնավոր մարդիկ միավորող էկոլոգիական բնույթի բազմաթիվ կազմակերպությունների գործունեության մեջ:

Կապիտալիստական հասարակության դեմոկրատական ուժերի գործունեության մեջ այդ պրոբլեմների անխզելիության վառ դրսևորումը հանդիսացավ, օրինակ, «կանաչների» կուսակցության յուրատեսակ երևույթը, կուսակցություն, որն առաջացել է ԳՖՀ-ում մի քանի տարի սրանից առաջ՝ արտապառլամենտական օպոզիցիայի շրջանակներում և այժմ բավական պատկառելի ուժ դարձել ԳՖՀ-ի քաղաքական հորիզոնում: «Կանաչները», որոնք հանդես են եկել իշխանության ղեկի մոտ միմյանց փոխարինող բուրժուական ավանդական կուսակցությունների քաղաքականության քննադատությամբ, բողոքում են միջուկային սպառազինությունների մրցավազքի դեմ, պայքարում ԳՖՀ-ի տարածքում ամերիկյան հրթիռներ ու քիմիական զենք տեղադրելուց հրաժարվելու, շրջակա բնական միջավայրի պահպանությունը խիստ ուժեղացնելու համար (այստեղից էլ նրանց կուսակցության անունը), հալածանքների են ենթարկվում ԳՖՀ-ի կառավարող կուսակցությունների ու նրանց անդրօվկիանոսյան դաշնակիցների կողմից: Սակայն, չնայած բնակչությանը «կարմիր-կանաչ վտանգով» ահաբեկելու համար ծավալված կատաղի կամպանիային, հետզհետե ավելի է մեծանում այդ կուսակցության ազդեցությունը, որն իր շարքերում արդեն ունի մի քանի տասնյակ հազար մարդ, իր ներկայացուցիչներն ունի շատ մարզերի լանդտագներում և իր ֆրակցիան՝ բունդեստագում:

Շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմի, խաղաղության պայքարի գործի ու կապիտալիստական և սոցիալիստական երկրների միջև կոնտակտների ընդլայնման փոխադարձ կապին հատուկ ուշադրություն է դարձվում ՍՄԿԿ-ի և սովետական կառավարության պաշտոնական փաստաթղթերում: Այսպես, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում դա նշվեց այն պրոբլեմների շարքում, որոնք, իրենց բնույթով լինելով համապարփակ և ունենալով հարաճուն նշանակություն, ընդունակ են կարևոր ավանդ ներդնելու մեր օրերի գլխավոր հարցի՝ պատերազմի ու խաղաղության հարցի լուծման գործում:

Վերջին տարիներին ՄԱԿ-ը բնության պահպանության վերաբերյալ ընդունել է մի շարք կարևոր փաստաթղթեր, որոնք նախապատրաստվել են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների գործուն մասնակցությամբ: Դրանց թվում են «Ներկա և ապագա սերունդների համար Երկրի բնության պահպանության նպատակով պետությունների պատմական պատասխանատվության մասին» բանաձևը (1981 թվական), «Բնության համաշխարհային խարտիան» (1982 թվական) և այլն: Արդեն մի քանի տարի է աշխատանքներ են տարվում ՄԱԿ-ի և այլ ծրագրերով, ընդլայնվում է զանազան երկրների ինչպես բազմակողմ, այնպես էլ երկկողմ գիտագործնական համագործակցությունը, ձևավորվում է միջազգային իրավունքի նոր բնագավառ: Շրջակա միջավայրի պրոբլեմները գործնականորեն արտացոլվում են մեր ժամանակի բոլոր կարևորագույն փաստաթղթերում: Այսպես, օրինակ, «Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության Եզրափակիչ ակտում» նշված է, որ «շրջակա միջավայրի պաշտպանությունն ու բարելավումը, ինչպես նաև բնության պահպանությունը և ռեսուրսների խելամիտ օգտագործումը ներկա և ապագա սերունդների շահերի համար, այն խնդիրներից մեկն է, որոնք կարևոր նշանակություն ունեն ժողովուրդների բարեկեցության և բոլոր երկրների տնտեսական զարգացման համար»:

Շրջակա միջավայրի պահպանության բնագավառում միջազգային համագործակցության համար բոլոր հնարավորություններն ըստ ամենայնի օգտագործելով հանդերձ, մի անգամ ևս շեշտենք, որ կապիտալիզմն իր էությամբ



digitised by A.R.A.R.@

թշնամի է բնությանը և սկզբունքորեն հնարավոր չէ նրա տիրապետության
օրոք լիովին կարգավորել բնության խելամիտ օգտագործումը: Շարունակ այդ
մասին են հիշեցնում բնության, իսկ հետևաբար նաև մարդկանց առողջու-
թյան նկատմամբ գիշատիչ վերաբերմունքի փաստերը, որոնք ամեն օր դառնում
են լայն հասարակայնության սեփականությունը: 1982 թվականի կեսին քի-
միական թունավոր թափոններ պարունակող 10 հազար կոնտեյներների հայտ-
նաբերումը Ամստերդամի մոտ, որոնք թունավորում էին շրջակա բնական մի-
ջավայրը և որոնց վնասազերծելու համար կառավարությունը ծախսեց տասն-
յակ միլիոնավոր ֆլորին, այն 13,5 միլիոն տոննա թունավոր նյութերը, որոնք
ամեն տարի թափվում են ֆրանսիական գետերը, Արևմտյան Բեռլինի «Ֆերակ»
ֆիրմայի դատական գործը, որը մարտական թունավոր նյութերը պահպանելիս
կատարել էր անվտանգության միջոցների խնայողություն ու Տելտով ջրանցքն
էր թափել թափոններն ու դրանով շոշափելի վնաս պատճառել այդ շրջանի
բնակիչներին և այլ համանման փաստեր խոսում են այն մասին, որ կապի-
տալիզմն անընդունակ է քիչ թե շատ հետևողականորեն վարելու շրջակա մի-
ջավայրի պահպանության քաղաքականություն:

Էկոլոգիական պրոբլեմի արմատական լուծումը կապիտալիստական եր-
կըրներում կպահանջեր սոցիալական լուրջ վերափոխումներ՝ մոնոպոլիաների
ամենազոր իշխանության սահմանափակում, վերահսկողության սահմանում
դրանցից այն մոնոպոլիաների նկատմամբ, որոնց գործունեությունն առավել
վտանգավոր է շրջակա միջավայրի համար, էներգետիկ ճյուղերի ազգայնա-
ցում, հասարակական տրանսպորտի զարգացում և այլն: Այսպիսով, պատմա-
կան պրակտիկան հաստատում է մարքսիզմ-լենինիզմի դասականների արած
այն հիմնարար հետևությունը, որ հասարակական նոր կարգի անցնելու ան-
հրաժեշտությունը թելադրվում է ոչ միայն սոցիալական գործոններով, որոնք,
անկասկած, որոշիչ են, այլև սոցիալ-բնական կարգի գործոններով:

Արդեն իրենց վաղ շրջանի աշխատություններում գիտական կոմունիզմի
հիմնադիրներն արտահայտում էին այն միտքը, որ էկոլոգիական պրոբլեմի
իսկական լուծումը հնարավոր է միայն կոմունիստական ֆորմացիային անց-
նելու միջոցով, որը ցույց է տալիս իր պատմական առաքելության մի կողմը
ևս՝ ոչ միայն մարդու, այլև բնության փրկությունը: Անցումը կոմունիստական
հասարակարգի պարզ անցում չէ հասարակական-տնտեսական մի ֆորմացիա-
յից մեկ այլ ֆորմացիայի, այլ մարդկության պատմության մեջ իր նմանակ-
ները չունեցող անցում է հասարական հարաբերությունների սկզբունքորեն
այլ տիպի՝ կոմունիստական քաղաքակրթության, նոր տիպի քաղաքակրթու-
թյան: Կոմունիստական ֆորմացիայի առավել բնորոշ գծերից մեկը ոչ միայն
հասարակական արտադրության կազմակերպման ու կարգավորման, այլև ամ-
բողջ հասարակության կազմակերպման ու զարգացման, բնության հետ նրա
փոխներգործության պլանաչափ ու գիտակցական բնույթն է:

Հետաքրքրական է, որ Փետրվարյան հեղափոխության հաղթանակից ան-
միջապես հետո, 1917 թվականի գարնանը, Պրոլետարիատի խնդիրները մեր
հեղափոխության մեջ աշխատությունում Լենինը շեշտում էր սոցիալիստական
հեղափոխությունից հետո բնապահպանման միջոցառումներ իրականացնելու
անհրաժեշտությունը, նշելով, որ նոր իշխանությունը պետք է «որոշի անտառ-
ների պահպանության, մելիորացիայի օրենքները» (ԵԼԺ, հ. 31, էջ 201) և այլն:

1921 թվականի ապրիլին Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր դարձ-
նում հասարակության և բնության փոխհարաբերությունների կարգավորման
բնագավառում սահմանված մոտեցումը խստագույնս պահպանելու անհրա-
ժեշտությանը: «Մեր հումքի աղբյուրները պահպանելու համար,— գրում էր
նա— մենք պետք է աշխատենք կատարել ու պահպանել գիտատեխնիկական
կանոնները» (ԵԼԺ, հ. 43, էջ 208): Բնության սոցիալիստական օգտագործման
նկատմամբ Վ. Ի. Լենինի առաջադրած կարևորագույն պահանջները բնական
հարստությունների կոմպլեքսային և տարբեր ձևի օգտագործման պահանջներ
են, անհաշտվողականություն դրանց հափշտակման նկատմամբ:

Արդի պայմաններում շրջակա միջավայրի պահպանման նպատակով



ՍՄԿԿ-ի ու մյուս կառավարող մարքս-լենինյան կուսակցությունների ծավալած
գործունեությունը դարձել է գիտականորեն հիմնավորված էկոլոգիական քա-
ղաքականություն, որը նույնքան կարևոր է, որքան և կուսակցության քաղա-
քականության մյուս բնագավառները: Այսպես, ՍՄԿԿ-ն ուշադրություն է
դարձնում այն բանին, որ բնության խելամիտ օգտագործման ստրատեգիայի
մշակումը պահանջում է հիմնարար ուսումնասիրություններ հասարակության
և բնության փոխներգործության տեսության բնագավառում, որոնք կապված
լինեն նրա ինչպես տեսական, այնպես էլ կիրառական ասպեկտների հետ, լայն
հետազոտություններ սոցիալիզմի քաղաքատնտեսության բնագավառում, որոնք
հնարավորություն են ընձեռում մշակելու և պլանավորող ու տնտեսական գոր-
ծունեության մեջ կիրառելու էկոլոգատնտեսական գնահատման չափանիշներ,
բնության նկատմամբ վերաբերմունքը կարգավորող օրենսդրական ակտերի
համակարգի ստեղծում, կոմպլեքսային, ռեգիոնալ մոտեցում շրջակա միջա-
վայրի պահպանության և բնական ռեսուրսների խելամիտ օգտագործման
պրոբլեմներին, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի գնահատման ժամանակ
էկոլոգիական հետևանքների պարտադիր հաշվառում:

ՍՍՀՄ-ում մեծ աշխատանք է կատարվելու մոնիտորինգի համակարգի
ստեղծման գործում, որն ապահովում է բնական ռեսուրսների և բնական մի-
ջավայրի վիճակի մասին ինֆորմացիայի ավտոմատացված հավաքումը, մշա-
կումը, պահպանումը և տրամադրումը: Անհրաժեշտ է մշակել մարդու և էկո-
լոգիական համակարգերի վրա թույլատրելի ու կրիտիկական բեռնվածություն-
ների ճշգրիտ չափանիշներ և որոշել այդ բեռնվածությունները, բացահայտել,
այսպես կոչված, ճգնաժամային շրջանները, շրջակա միջավայրի պահպանու-
թյան աշխատանքների առաջնահերթ ուղղությունները մեր երկրի այս կամ այն
ռեգիոնում:

Բնության խելամիտ օգտագործման ստրատեգիայի ծրագիրը, որը նախանըշ-
ված էր դեռևս մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատություններում, հա-
սարակության և բնության փոխներգործության վերահսկողությանն ու կարգա-
վորմանը համատեղ, ընդգրկում է նաև այնպիսի սկզբունքների պահպանում,
ինչպես հասարակության զարգացման եղանակի համաձայնեցումն է մեր մո-
լորակի բնական միջավայրի հնարավորությունների ու զարգացման առանձ-
նահատկությունների հետ, միջավայրի հետ փոխանակության համարժեքու-
թյան անհրաժեշտությունը, բնության մեջ նյութի ու էներգիայի ընդհանուր
շրջապտույտում անտրոպոգեն շրջապտույտի ներառվածությունը, բնության
ու մարդու միասնության հստակ ըմբռնումը: Այդ դեպքում հասարակությունը
պետք է ստանձնի այնպիսի ֆունկցիաներ, որոնք մեր մոլորակի կենդանի բնու-
թյան էվոլյուցիայի ընդհանուր օրինաչափությունների արտացոլումն են: Դրանց
թվին են պատկանում, ամենից առաջ, հասարակություն-բնություն համակար-
գի ամբողջականության և կայունության մեծացումը, այսինքն՝ շրջակա միջա-
վայրի պահպանությունը, հասարակության կենսագործունեության թափոնների
վերացումը, խախտված բնական կոմպլեքսների վերականգնումը և այլն:

ՍՄԿԿ XXVI համագումարն առաջադրեց օգտակար հանածոների կոմպ-
լեքսային, խոր վերամշակման, երկրորդային ռեսուրսների ավելի լայն կիրառ-
ման խնդիրներ: ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ընկեր Կ. Ու.
Չեռնենկոն հատուկ ուշադրություն հրավիրեց այն բանին, որ որքան կարելի է
լիովին ու արդյունավետ օգտագործվեն մեր էկոնոմիկայի, գիտության, մշա-
կույթի վիթխարի հնարավորությունները, մեր բնական ռեսուրսները: Համա-
գումարի առաջադրած նպատակների իրականացումը կապված է բավականին
բարդ խնդիրների հետ: ՍՍՀՄ-ում կուսակցությունն ու կառավարությունը հըս-
կայական միջոցներ են հատկացնում բնության պահպանության գործին, այդ
միջոցներն արդեն կազմում են ոչ թե միլիոններ, այլ տասնյակ միլիարդավոր
ռուբլիներ: Այդ միջոցների առավելագույն խելամիտ օգտագործմանը դեռ
խանգարում են ոչ միայն բնական ռեսուրսների օգտագործման բնագավառում
կազմակերպական կառուցվածքի թերությունները և հասարակության ու բնու-
թյան փոխներգործության ընդհանուր տեսության թույլ մշակվածությունը, այլև



digitised by A.R.A.R.@

մի շարք տնտեսական ղեկավարների մտածողության իներցիան։ Մարդկանց գիտակցության, բնության նկատմամբ նրանց վերաբերմունքի վերակառուցումը ժամանակի պահանջն է և նոր մարդու դաստիարակության խնդրի լուծման անկապտելի մասը։ Այդ իսկ պատճառով այն ավելի ու ավելի է դառնում սովետական գիտության, կուսակցական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների հատուկ ուշադրության առարկան։

Կարևոր է լայն մասսաների շրջանում հետևողականորեն և անխոնջ կերպով ձևավորել մարքսիզմ-լենինիզմի դասականների կողմից հիմնավորված դիալեկտիկամատերիալիստական վերաբերմունքը բնության նկատմամբ։ Մարդկության թափանցումը տիեզերք հնարավորություն ընձեռեց նրան շոշափելի ձևով զգալու, որ Երկիրը անսահման տիեզերքի մի աննշան մասն է միայն, իսկ մարդը՝ մոլորակի կենսոլորտին անխզելիորեն կապված տարրերից մեկը։ Էկոլոգիական պրոբլեմները մարդուն հիշեցրին նաև կենսոլորտի ամբողջականության, նրա փոխհատուցելիության հնարավորությունների ու ինքնակարգավորման կարողության սահմանափակության և սպառելիության վերաբերյալ, իր օրրանի՝ Երկիր մոլորակի կենդանի ու ոչ կենդանի բնության հետ մարդկության խոր միասնության մասին։

Կարևոր է լայն մասսաների շրջանում ամեն կերպ հետաքրքրություն ու սեր զարգացնել հարազատ երկրի բնության նկատմամբ, զարգացնել Երկրի վրա եղած ողջ կենդանի բնության համար սեփական պատասխանատվության գիտակցում։ Հսկայական նշանակություն է ստանում էկոլոգիական գիտելիքների պրոպագանդան և էկոլոգիական դաստիարակությունը։ Այդպիսի աշխատանքը կոմունիստական կուսակցության գաղափարախոսական աշխատանքի անկապտելի բաղադրամասն է, բնության վերաբերյալ բնագիտական գիտելիքների պրոպագանդմանը զուգընթաց ընդգրկելով ժամանակակից էկոլոգիական իրավիճակի, բնության օգտագործման բնագավառում սոցիալիզմի սկզբունքային առավելությունների, էկոլոգիայի պրոբլեմների հետ կապված սոցիալիստական երկրների միջազգային նախաձեռնությունների, բնության պահպանության վերաբերյալ օրենսդրության հիմունքների մարքս-լենինյան բացատրության պրոպագանդումը, ինչպես նաև ակտիվ պայքարը բուրժուական գաղափարախոսության ներկայացուցիչների զանազան «էկոլոգիական» ըմբռնումների, առօրյա գիտակցության մեջ «էկոլոգիական հոռետեսության» դրսևորումների դեմ։ Այստեղ, իհարկե, կարևոր է հետևողական, սկզբունքային դիրքորոշումը նաև մեզ մոտ այդ բնագավառում եղած թերությունների դեմ մղվող պայքարում (առանձնապես խոսքը այդ հարցի վերաբերյալ եղած օրենսդրության փաստացի կատարման մասին է), ժողովրդական դեպուտատների սովետների, նրանց գործադիր և կարգադրիչ մարմինների ավելի լայն ներգրավումը բնության պահպանության աշխատանքում, հատուկ ուշադրությունը նոր, էկոլոգիական տեսակետից արդարացված տեխնոլոգիաների ավելի արագ արմատավորմանը և բնական ռեսուրսների նկատմամբ կոմպլեքսային մոտեցման սկզբունքի պահպանումը։

Քանի որ բնության պահպանության խնդիրների լուծումն ունի առաջնահերթ կարևորություն, ուստի անհրաժեշտ է համարվել դրանք շարադրել ՍՄԿԿ XXVI համագումարում ընդունված «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» առանձին բաժնում։ Այդ կարևորագույն փաստաթղթում նշված է ՍՄԿԿ-ի էկոլոգիական քաղաքականությունն առաջիկա տասնամյակի համար։

Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ այժմ ՍՍՀՄ-ում ստեղծված են բոլոր նախադրյալները՝ հասարակության և բնության փոխհարաբերությունների պրոբլեմի խելամիտ ու հաջող լուծման համար։

---

# ԱԿՏԻՎ ԿԵՆՍԱԴԻՐՔՈՐՈՇՈՒՄԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ՀՈԳԵՎՈՐ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ,— նշել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— ՍՄԿԿ ծրագրային նպատակն է, սոցիալիստական հասարակության կառուցման կարևորագույն պայմանը։ Կուսակցությունը սովորեցնում է, որ կոմունիզմն անհնարին է առանց մարդկանց համակողմանի զարգացման, նրանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի։ Մեր երկրում ստեղծված են անձի համակողմանի և ներդաշնակ զարգացման համար անհրաժեշտ բոլոր պայմաններն ու նախադրյալները։ Սակայն մեր օրերի մարդը, իր կենսական դրսևորումների բազմազանությամբ, սոցիալական հատկանիշներով, նյութական և հոգևոր պահանջմունքներով ոչ միայն իրագործվող սոցիալ-տնտեսական, քաղաքական ու կուլտուրական վերափոխումների նպատակն է, այլ նաև արարողը։

Այս ամենում, որպես մարդու ինքնությունը բնութագրող, նրա հասարակական էությունն ու հասարակականորեն արժութավորված անհատական հատկանիշներն արտահայտող սոցիալ-հոգեբանական բարդ և բազմանիստ կատեգորիա, կարևորվում է անձի ակտիվ կենսադիրքորոշումը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումն առաջադրեց արդի փուլում և տևական հեռանկարի համար կուսակցության գաղափարական գործունեության ծավալուն կոնցեպցիա։ Այն մասսաների քաղաքական գիտակցականության և աշխատանքային ակտիվության մակարդակի բարձրացումը համարեց գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա հաջողության գլխավոր չափանիշը։

Աշխատավորների բարոյաքաղաքական հատկանիշների, քաղաքական բարձր կուլտուրայի, կրթության և մասնագիտական իրազեկության վրա խարսխված ակտիվ կենսադիրքորոշումով է պայմանավորված հասուն սոցիալիստական հասարակության հաջող առաջընթացը։ Նրանց արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվ գործունեությամբ են առաջին հերթին պայմանավորված հասարակության սոցիալ-տնտեսական և կուլտուրական վերելքը, նրա բարեկեցության աճը, կենսական բարիքների բազմապատկումը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման հեռանկարները։ Սովետական հասարակարգի զարգացման արդի՝ հասուն սոցիալիզմի, փուլը հասարակական-քաղաքական, նյութական, հոգևոր և բարոյական նպաստավոր նախադրյալներ է ստեղծում մասսաների հասարակական ակտիվության ըստ ամենայնի դրսևորման համար։ Ներկայումս մեր մարդկանց, որպես կանոն, բնորոշ է կուլտուր-կրթական բարձր մակարդակը։ Ավելին, մարդկանց ճնշող մեծամասնությունը վաղուց ի վեր ազատվել է սոցիալական ակտիվությունը կաշկանդող, կուլտուրական ու բարոյական զարգացմանը խոչընդոտող հանգամանքներից։ Սոցիալական և հոգևոր առաջընթացի համար լայն պայմաններ ստեղծած գիտատեխնիկական առաջընթացի նոր իրադրությունը, էակա-





digitised by A.R.A.R.@

ակտիվ կենսադիրքորոշման մշակման, քաղաքական կուլտուրայի բարձրացման, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման հարցերը, ստեղծվել է գաղափարաբարոյական առողջ մթնոլորտ։ Այդ գործին մեծապես նպաստում է սովետական օրենքները խախտողների և մեր բարոյականությանը խորթ այլ երևույթների դեմ մղվող լայն և հետևողական պայքարը։ Հանրապետության գաղափարաբարոյական մթնոլորտին բնորոշ է մասսաների հետ կուսակցության միասնության ամրապնդումը։ Կոմունիստների, հանրապետության բոլոր աշխատավորների համար ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստությունը ուղեկցվում է ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների որոշումների իրականացման, տասնմեկերորդ հնգամյակի պլանների կատարման աշխատանքի ուժեղացումով։ Առանձնահատուկ կարևորություն է տրվում էկոնոմիկայի մեջ, հասարակական կյանքում, կուսակցության շինարարության ասպարեզում դրական միջոցառումների ամրապնդման և զարգացման գործին։

Արդեն մի քանի տարի է, ինչ հանրապետությունում կիրառվում է միասնական քաղօրերի պրակտիկան, որի ընթացքում, յուրաքանչյուր ամիս, աշխատավորական կոլեկտիվներում երկրի ներքին և արտաքին հարցերին նվիրված քաղաքական զեկուցումներով հանդես են գալիս շուրջ 1.500 ղեկավար աշխատողներ՝ ունկնդիր ունենալով գրեթե 100 հազար մարդու։ Քաղաքական այս միջոցառումների ընթացքում տեղերում աշխատավորների բարձրացրած հարցերի թիվը տարեկան հասնում է 3.000-ի։ Դրանց մի մասին անմիջական պատասխան է տրվում լսարաններում։ Մնացածը վերլուծվում և ընթացք է ստանում վերադաս կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններում։ Բարձրացվում են հասարակական հնչեղության հարցեր, արտահայտվում են սոցիալ-կուլտուրական, ժողովրդատնտեսական խնդիրների, աշխատանքային կոլեկտիվների պրակտիկ գործունեության հրատապ պրոբլեմների հաջող լուծմանն ուղղված նկատառումներ։ Նույնը կարելի է ասել հանրապետությունում լավ սովորույթ դարձած դեպուտատի միասնական օրերի մասին։

Անձի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման առնչությամբ կուսակցական աշխատողները, տնտեսական ղեկավարները հասարակական գիտությունների ներկայացուցիչներից դեռևս սպասելիքներ ունեն։ Առաջին հերթին գաղափարական ոլորտի աշխատողները անձի ակտիվ կենսադիրքորոշման ցուցանիշների, սոցիալ-հոգեբանական և բարոյաէթիկական պրոբլեմների մշակված համակարգի կարիք ունեն։ Որքան բարձր լինի նման հետազոտությունների մակարդակը, այնքան դյուրին կլինի կուլտուրայի արժույթներով, բարոյական իդեալներով ու նորմերով մարդկանց զինելը։

«...Ինչ հատկանիշներով մենք պետք է դատենք ռեալ անհատների ռեալ «խոհերի ու զգացմունքների» մասին,— հարցնում է Վ. Ի. Լենինը և պատասխանում։— Հասկանալի է, որ այդպիսի հատկանիշ միայն մեկը կարող է լինել, այն է՝ այդ անհատների գործողությունները. և քանի որ խոսքը միայն հասարակական «խոհերի ու զգացմունքների» մասին է, ապա պետք է ավելացնել նաև՝ անհատների հասարակական գործողությունները, այսինքն՝ սոցիալական փաստերը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 514)։ Լենինյան այս հիմնադրույթը նպատակամետ կերպով կիրառվում է մեր կուսակցության պրակտիկ գործունեության ընթացքում։ Դրա վառ արտահայտությունը ՍՄԿԿ XXVI համագումարի և կուսակցության Կենտկոմի ետհամագումարյան պլենումների որոշումների հետևողական կենսագործումն է։

Կոմունիստական բարոյականության կարևորագույն ստորոգելին հանդիսացող ակտիվ կենսադիրքորոշումը մեր առաջընթացի, հասարակական և անհատական զարգացման ամենադինամիկ և հզոր գործոններից է։ Բարձր գաղափարայնություն և ներքին ինքնակարգապահություն, աշխատանքում, ողջ հասարակական գործունեության մեջ կազմակերպվածություն, անձի հարուստ հուզաշխարհ, ժողովրդի համար լավագույն կյանքի պայմաններ ստեղծելու լավատեսական և գիտակցական ձգտում, առավելագույն հատույցով աշխատելու ցանկություն— ահա սոցիալիստական քաղաքակրթության ակտիվ կենսադիրքորոշում ունեցող անհատի դիմորոշ հատկանիշները։

---



# ԿՈՒՍՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ

**Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովի
նախագահ

Կուսակցական, պետական, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կոմունիստների, բոլոր կադրերի պատասխանատվության բարձրացման, կազմակերպվածության ու կարգուկանոնի հաստատման կուրսը, որ մշակել ու գործողության մեջ է դրել ՍՄԿԿ Կենտկոմը, դարձել է կենտրոնական ու տեղական կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս մարմինների գործունեության գլխավոր ուղղությունը, ողջ աշխատանքի առանցքը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան արտահերթ պլենումը լիովին հավատարիմ մնաց մեր կուսակցության այդ կուրսին և մատնանշեց, որ կազմակերպվածության, կարգուկանոնի հարցերը մեզ համար հանգուցային, սկզբունքային բնույթ են կրում։ Միաժամանակ նշվեց, որ ամեն մի անկազմակերպվածություն, անպատասխանատվություն հասարակության համար վերածվում են ոչ միայն նյութական ծախսերի, այլև սոցիալական և բարոյական լուրջ վնաս են հասցնում։

Վերջին շրջանում մեր երկրում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական բնույթի նկատելի դրական տեղաշարժերը արդարացիորեն դիտվում են որպես կարգապահության ամրապնդման և կարգուկանոնի հաստատման կուրսի արդյունքն ու արգասիքը։ Դրա հետ մեկտեղ, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն 1984 թ. փետրվարյան պլենումում արտասանած իր ճառում, կուսակցությունն ու պետությունը ուժեղացրել են պայքարը պետական միջոցների շռայլումների, աչքակապության, պաշտոնական դիրքի չարաշահումների, հափշտակումների ու կաշառակերության երևույթների դեմ։ Ընդ որում դա ժամանակավոր կամպանիա չէ, այլ այն գիծն է, որ վարվելու է մշտապես և անշեղորեն։ Ընդգծվեց նաև, որ այստեղ ոչ մեկի նկատմամբ ներողամտություն չկա և չի լինի, ոչ ոք չպետք է այս առթիվ պատրանքներ տածի։

Նշված խնդիրների իրականացումը մեր բոլոր կուսակցական կազմակերպություններից կպահանջի մեծ ջանքեր, տևական համառ աշխատանք, անհաշտ պայքար մեր կյանքի բացասական երևույթների ու նրանց կրողների դեմ։

Այդ ասպարեզում լուրջ և կարևոր անելիքներ ունեն նաև քաղաքային ու շրջանային կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովները։ Այդ նրանք են իրականացնում կոմունիստների կողմից ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության, կուսակցական բարոյականության նորմերի կատարման վերահս-



digitised by A.R.A.R.@

ովքեր ձախողում են պետական պլանների կատարումը, չեն ապահովում շինարարական-մոնտաժային աշխատանքների բարձր որակը, խախտում են կարևորագույն օբյեկտների գործարկման ժամկետները։

Կուսհանձնաժողովների կողմից իրականացվող վերահսկողությունն առավել արդյունավետ է այն ժամանակ, երբ բխում է կուսշարքերի ընդունելության և կոմունիստների անհատական գործերի քննարկման պրակտիկայից, նրա բազմակողմանի վերլուծությունից։ Դրանում պարզորոշ արտացոլվում են կուսակցական-կազմակերպական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքների թերություններն ու վրիպումները, կուսակցական կազմակերպությունների վերաբերմունքը մեր կյանքի բացասական երևույթների և դրանց կրողների նկատմամբ, կոնֆլիկտային իրադրությունների առաջացման պատճառները, կուսկազմակերպություններում և աշխատանքային կոլեկտիվներում իշխող քաղաքական և բարոյահոգեբանական մթնոլորտը։

Վերլուծությունները ցույց են տալիս, օրինակ, որ դատվածության պատճառով կուսշարքերից վտարված կոմունիստների մի զգալի մասը կուսակցական այդ բարձրագույն պատժին են ենթարկվել սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություններ կատարելու, սպեկուլյացիայի և կաշառակերության պատճառով։ Այդ փաստերը մի կողմից վկայում են, որ մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն ուժեղացրել են պայքարը այդ արգահատելի երևույթների դեմ, և դա անվիճելի է, իսկ մյուս կողմից դրանք հաստատում են այն իրողությունը, որ դեռևս առանձին ճյուղերում և կազմակերպություններում անհրաժեշտ կարգ ու կանոն չի հաստատված հանրային ունեցվածքի պահպանության, նյութական արժեքների հաշվառման ու հաշվետվության գործում, կուսկազմակերպությունները միշտ չէ, որ պատշաճ լրջություն և պատասխանատվություն են դրսևորում արտադրության ղեկավարների և նյութական պատասխանատու կադրերի ընտրության գործում, արժեքները երբեմն վստահում են վարկաբեկված և անպատասխանատու մարդկանց։

Սոցիալիստական սեփականության պահպանության ասպարեզում ստուգումներ այժմ քիչ չեն կատարվում, սակայն դրանց արդյունքները դեռևս գոհացուցիչ չեն, քանի որ դրանք մեծ մասամբ ձեռնարկվում են ուշացումներով, հանցագործ արարք կատարվելուց հետո, երբ արդեն հանցագործությունը կանխել, վիճակը շտկել անհնար է։ Այդպիսի ստուգումներ ևս անհրաժեշտ են, թեկուզ մեղավորներին պատժելու, կատարած հանցագործության վնասակար հետևանքները վերացնելու նպատակով, սակայն մեր գլխավոր ջանքերը պետք է նպատակամղվեն այդ երևույթները կանխելու և նախականխելու գործին։ Մոտավորապես այդպես վարվեց ՀԿԿ Շահումյանի շրջկոմը՝ վերջերս անդրադառնալով Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում հանրային ունեցվածքի պահպանության հարցին։ Այստեղ մի շարք թերություններ հայտնաբերվեցին նյութական արժեքների մուտքագրման, հաշվառման, շարժի, հաշվետվության գործում, բացահայտվեցին անկազմակերպվածության, անկարգապահության փաստեր, որոնք արժանացան կուսշրջկոմի պատշաճ գնահատականին, մշակվեցին միջոցառումներ թերություններն ու սխալները շտկելու համար։

Պատշաճ վերահսկողություն չիրականացնելու և հանրային ունեցվածքի պահպանության նպատակով անհրաժեշտ միջոցներ չձեռնարկելու համար շրջկոմը կոմբինատի դիրեկտոր Շ. Հովհաննիսյանին և դիրեկտորի տեղակալ Մ. Սարգիզովին հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում։ Շրջկոմը միաժամանակ կոմբինատի դիրեկտորին նախազգուշացրեց, որ եթե նա կարճ ժամանակամիջոցում արդյունավետ միջոցներ չձեռնարկի կոմբինատում վիճակը շտկելու համար, ապա կենթարկվի առավել խիստ պատասխանատվության։

Վերահսկողության արվեստը ոչ թե սենսացիոն մերկացումների մեջ է, այլ նրանում, որպեսզի սխալներն ու թերությունները վեր հանվեն դրանց սաղմնավորման շրջանում և կանխվեն։ Երբ ստուգումը ժամանակին չի ար-



վում, ապա թերություններն ու սխալները ծավալվում են, խորանում և վնասակար չափերի հասնում, հանգեցնում բարդ ու անցանկալի երևույթների։ Հենց նման պարագայում է տեղի ունենում կադրերի ցավալի կորուստը, որը կորուստներից ամենածանրն է։

Վերջին տարիներին մեր հանրապետությունում ևս լայն ծավալ ստացավ կոլեկտիվ այգեգործությունը։ Դա ինքնին խրախուսելի գործ է, սակայն այս մարզում ևս քիչ չարաշահումներ տեղի չունեցան, որոնց պատճառով ոմանք քրեական պատասխանատվության առաջ կանգնեցին, ենթարկվեցին կուսակցական խիստ տույժերի և նույնիսկ վտարվեցին կուսշարքերից։ Սակայն տեղական կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս մարմինները դարձյալ պատշաճ վերահսկողություն, վճռականություն և հետևողականություն չեն դրսևորում այդ գործում, խստորեն չեն նախազգուշացնում խախտումների ճանապարհը բռնող մարդկանց, ժամանակին չեն կանխում նրանց քաղքենիական ձգտումները։ Քիչ անելիքներ չունեն նաև կուսհանձնաժողովներն այս գործում։

Լուրջ թերություններ կան նաև անհատական բնակարանային շինարարության գործում։ Ամենատարածվածն այստեղ բնակարանների սահմանված չափերի կոպիտ խախտումներն են, որոնք երբեմն երկուսից երեք անգամ գերազանցում են նախատեսված նորմաները։ Այդ բնույթի խախտումների համար ևս մի քանի մարդ վտարվել է կուսշարքերից, սակայն երևույթը դեռևս չի կանխվել, քանի որ այդ գործի համար պատասխանատու պաշտոնատար անձինք անպատասխանատվություն են դրսևորում իրենց պարտականությունների կատարման գործում։

Կուսակցական հանձնաժողովները դեռևս բավարար չափով չեն զբաղվում այն մարդկանց հարցով, ովքեր, արատավորելով կոմունիստի բարձր կոչումը, զբաղվում են անաշխատ եկամուտներ կորզելով։ Դրա աղբյուրներից մեկը սեփական ավտոմեքենաների առքն ու վաճառքն է, որտեղ չարաշահումները շատ են, մինչդեռ լուրջ պայքար դրանց դեմ, ըստ էության, չկա։

Սևանի ավազանի շրջաններում ձկնագողությունը կատարյալ չարիք է դարձել, մինչդեռ այդ շրջանների կուսակցական, սովետական, վարչական մարմինները, ինչպես նաև կուսհանձնաժողովները բացարձակապես հաշտվել են այդ ծայրաստիճան վնասակար երևույթի հետ, չտեսնելու են տալիս, թե ինչպես անձնական շահի մոլուցքին գերի անազնիվ մարդիկ անուղղելի վնաս են հասցնում հայրենի բնությանը։ ՀԿԿ Սևանի, Կամոյի անվան, Մարտունու, Վարդենիսի և Կրասնոսելսկի շրջկոմները և նրանց կուսհանձնաժողովները վերջապես պետք է միասնական ճակատով անողոք պայքար մղեն այդ տարածված չարիքի դեմ և հաղթահարեն այն։ Մեր խորին համոզմամբ դա միանգամայն հնարավոր գործ է, դրա համար անհրաժեշտ է միայն ցանկություն, վճռականություն և հետևողականություն։

Կուսհանձնաժողովները պետք է պարբերաբար զբաղվեն պետական պլանների ու առաջադրանքների, պարենային ծրագրի կատարման վերահսկողության հարցերով, մշտապես հետևեն, որպեսզի սահմանված առաջադրանքները կատարվեն անվերապահորեն։

Վերջին տարիներին բավական լայն տարածում են ստացել պետական պլանների, այսպես կոչված, «ճշգրտումները»՝ դրանք պակասեցնելու իմաստով, ընդ որում այդ «ճշգրտումները» երբեմն հասնում են միլիոնավոր ռուբլիների, իսկ դրա համար ոչ ոք դեռևս պատասխանատվության չի ենթարկվել։

Սովետական կարգերի հիմքում, ինչպես նշել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, ընկած է սոցիալական արդարությունը։ Դրա առաջ երբեք չպետք է մեղանչել՝ ոչ աշխատանքի խրախուսման ու վարձատրման, ոչ էլ պարգևներ շնորհելու կամ բնակարաններ բաշխելու ու այլ գործերում։ Սոցիալական արդարությանը հետամուտ լինելը կուսակցական հանձնաժողովների համար սկզբունքային նշանակություն ունի։ Սոցիալական արդարությամբ և մարդկային ամենանվիրական ձգտումներով են տոգորված ՍՄԿԿ ծրագրային փաստաթղթերը, մեր կուսակցության քաղաքականությունը, նրա որոշումներն ու կանխագծումները։



digitised by A.R.A.R.@

ներկուսակցական կյանքի գլխավոր օրենքը ՍՄԿԿ կանոնադրությունն է, որի պահանջների կատարման վերահսկողությունը կուսակցական հանձնաժողովների գլխավոր պարտականությունն է։ Դրան պետք է ծառայի կուսհանձնաժողովների ողջ գործունեությունը։

Մինչև վերջերս մեր քաղկոմ-շրջկոմներին առընթեր 13 կուսհանձնաժողովների ողջ կազմը, այդ թվում նաև նախագահները, իրոք, արտահաստիքային աշխատողներ էին, որոնք հնարավորություն չունեին բավարար չափով ուշադրություն նվիրելու հանձնաժողովների աշխատանքին։ Այժմ ՀԿԿ Կենտկոմի թույլտվությամբ այդ քաղկոմ-շրջկոմներում ևս կուսհանձնաժողովների նախագահների պարտականությունները դրվում են կուսակցական ապարատի հաստիքային աշխատողների վրա։ Դա, ինչ խոսք, մեծ օգնություն է կուսհանձնաժողովներին։

Այժմ յուրաքանչյուր քաղկոմ-շրջկոմ լիակատար հնարավորություն ունի կուսհանձնաժողովները համալրել պահանջված թվով հմուտ և փորձառու կոմունիստներով և նորմալ կազմակերպել նրանց աշխատանքը։ Չպետք է մոռանալ նաև, որ կուսհանձնաժողովները հնարավորություն ունեն նաև իրենց ստուգումներին ներգրավելու ցանկացած կոմունիստի ու մասնագետի։

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը 1983 թվականին, ՀԿԿ Կենտկոմի հանձնարարությամբ նախապատրաստել և նրա քննարկմանն է ներկայացրել մի շարք կարևոր հարցեր, որոնք նշանակալից հետք են թողել մեր հանրապետության կուսկազմակերպությունների կյանքում։ Կատարվածը, սակայն, մեզ չի կարող գոհացնել, քանի որ կարգապահության, կազմակերպվածության հաստատման, կոմունիստների, ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացման, կուսակցական վերահսկողության և կատարման ստուգման կազմակերպման գործում մեր անելիքները դեռևս շատ են։

ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ պայմանավորված է շատ գործոններով։ Անկեղծ ասած՝ մենք դեռևս չունենք լիակատար և սիստեմատիկ կուսակցական վերահսկողություն բոլոր օղակներում։ Եթե այն ինչ-որ չափով կարգավորված է «վերին օղակներում», ապա սերտորեն չի զուգորդվում միջին օղակի՝ քաղկոմ-շրջկոմների, առավել ևս սկզբնական կուսկազմակերպությունների կողմից իրականացվող վերահսկողության հետ, իսկ այդ կարգի թերություններից ու բացթողումներից հմտորեն օգտվում են անկարգապահ և անպատասխանատու մարդիկ։ Կուսակցական վերահսկողության ճակատը պետք է լինի միասնական և անխոցելի, նրանում չպետք է լինեն «նեղ տեղեր» և թույլ օղակներ։

Լուրջ կատարելագործման կարիք ունի նաև կոմունիստների անհատական գործերի քննարկման պրակտիկան։ Չի կարելի հաշտվել այն փաստի հետ, երբ մի շարք քաղկոմ-շրջկոմներ կոմունիստների պատասխանատվության հարցին անդրադառնալիս հաճախ շրջանցում են սկզբնական կուսկազմակերպություններին, դիմազրկում նրանց։ Դա ակնհայտ ու ոչնչով չհիմնավորված անվստահություն է սկզբնական կազմակերպությունների նկատմամբ և խիստ հակասում է ՍՄԿԿ կանոնադրության դրույթներին։

Ոմանք այդ սխալ պրակտիկան արդարացնում են նրանով, որ քաղկոմ-շրջկոմները պլանային կամ ընդհանուր բնույթի հարցեր քննարկելիս երբեմն առնչվում են կուսակցական ու պետական կարգապահության խախտման փաստերի հետ և հարկադրված անդրադառնում են մեղավոր անձանց պատասխանատվության հարցին։ Նախ՝ դրանք բացառություններ են և ոչ թե օրինաչափություն։ Մյուս կողմից՝ չպետք է մոռանալ նաև, որ պլանային հարցերի քննարկման նպատակը ոչ թե մարդկանց պատժելու, այլ սխալները բացահայտելու, համապատասխան միջոցառումներ մշակելու և դրանք վերացնելու մեջ է։ Հմուտ և հեռատես կուսակցական աշխատողներն այս պարագայում ևս կոմունիստների պատասխանատվության հարցը հանձնում են սկզբնական կուսկազմակերպությունների քննարկմանը, օգնում, որպեսզի այն անցկացվի



կուսակցական սկզբունքայնության դիրքերից, արարքին տրվի հիմնավորված գնահատական։ Դա լիովին բխում է կուսակցական դեմոկրատիայի ծավալման սկզբունքներից։

Երբեմն առանձին կուսակցական աշխատողներից կարելի է դատողություններ լսել այն մասին, թե սկզբնական կուսկազմակերպություններում մարդիկ իրար լավ են ճանաչում, հաճախ գտնվում են մոտիկ, ընկերական հարաբերությունների մեջ, ուստի և նրանք ի վիճակի չեն վերանալ այդ հարաբերություններից և փոխադարձ պահանջկոտություն դրսևորել միմյանց նկատմամբ։ Միանգամայն սխալ և վնասակար անհանգստություն։

Նախ՝ մարդկային լավ հարաբերությունները ոչ միայն գործին չեն խանգարում, այլև մեծապես օգնում են։ Իսկ եթե, այնուամենայնիվ, առանձին սուր կոնֆլիկտային իրադրության քննարկման ժամանակ կուսկազմակերպությունը նահանջի սկզբունքային դիրքերից, ապա քաղկոմ-շրջկոմները միշտ էլ հնարավորություն ունեն օգնելու կազմակերպությանը և շտկելու նրա գործած սխալը։ Նույնիսկ աննպաստ բարոյահոգեբանական մթնոլորտի և, այսպես կոչված, բացասական «լիդերների» առկայության դեպքում պետք է համարձակորեն գնալ դեպի սկզբնական կազմակերպություն, արագացնել երբեմն բևեռայնորեն հակադիր կարծիքների բախումն ու հանգուցալուծումը։

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, կոմունիստների քաղաքական հասունությունն ու ակտիվությունը առավել ցայտուն կերպով են դրսևորվում հենց սուր կոնֆլիկտային իրադրությունների պայմաններում։ Այդ կարգի հարցերի քննարկումից կազմակերպություններին հեռու պահելը օբյեկտիվորեն նրանց դատապարտում է պասսիվության, այն չի նպաստում նաև քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը։

Կուսկազմակերպությունները քիչ անելիքներ չունեն նաև կուսակցական տույժերի դաստիարակչական նշանակությունը բարձրացնելու գործում։ Մինչև վերջերս ոչ քիչ թվով կոմունիստներ ունեին մի քանի տարվա վաղեմության, իսկ ոմանք էլ՝ նույնիսկ կրկնակի ու եռակի տույժեր և մի տեսակ համակերպվել էին այդ վիճակի հետ։

ՀԿԿ Կենտկոմը միջոցառումներ մշակեց այդ հարցի առթիվ, կուսակցական կազմակերպություններից պահանջեց անհրաժեշտ կարգուկանոն մտցնել այդ գործում, մշտական աշխատանք կազմակերպել կուսակցական տույժ ունեցող անձանց հետ։ Վիճակը զգալիորեն փոխվեց, սակայն այն դեռևս հեռու է բավարար լինելուց։ Կուսակցական հանձնաժողովները երբեք չպետք է թուլացնեն այդ աշխատանքը։

Քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսհանձնաժողովները ևս լուրջ պատասխանատվություն են կրում կուսշարքերի աճի և որակական կազմի բարելավման գործում։ Դա մեծ ուշադրություն պահանջող և մանրակրկիտ գործ է, որը հիմնականում կատարվում է պատասխանատվության բարձր զգացումով, սակայն բացառված չեն նաև սխալներն ու վրիպումները։

Ձևականությունն ու ձևամոլությունը խիստ վնասակար են կուսակցական աշխատանքի ցանկացած ոլորտում, սակայն դրանք առավել անհանդուրժելի են մի այնպիսի կարևոր գործում, ինչպիսին կուսշարքերի ընդունելությունն է։ Կուսշարքերի ընդունելության փաստաթղթերում մարդու բարոյական կերպարը, նրա բարոյակամային հատկանիշները հաճախ աղավաղվում են, սխալներն ու թերությունները շրջանցվում, մարդը մի տեսակ իդեալականացվում է, զրկվում իրական նկարագրից։ Կոմունիստին, մարդուն բնութագրելը լուրջ և պատասխանատու բարոյաքաղաքական ակտ է, և այն պետք է կատարվի ամենայն բարեխղճությամբ։

Կուսակցական վերահսկողությունը, ինչ խոսք, ամենևին էլ չի սահմանափակվում կուսհանձնաժողովների գործունեությամբ։ Այդ վերահսկողությունն իրականացվում է մեր ողջ կուսակցության, նրա կենտրոնական ու տեղական կազմակերպությունների, բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների կողմից։ Ահա թե ինչու կուսհանձնաժողովների սերտ կապը և համագործակցու-



digitised by A.R.A.R.@

թյունը կուսակցական կոմիտեների բաժինների ու սկզբնական կուսկազմակերպությունների հետ ունի խիստ կարևոր և սկզբունքային նշանակություն։ Շատ կուսհանձնաժողովներ այդպիսի համագործակցության լավ ավանդույթներ ունեն։

Կուսակցական վերահսկողության ոլորտի ընդլայնման և դրա արդյունավետության բարձրացման հարցը լրջորեն մտահոգում է նաև ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսհանձնաժողովին։ Այդ նպատակով մշակվել և գործողության մեջ են դրվում մի շարք նոր միջոցառումներ, որոնցից առավել կարևորը կուսհանձնաժողովի կազմում մշտական վերահսկողական խմբերի ստեղծումն է։ Դրանք հինգն են և ընդգրկում են մեր գործունեության բոլոր հիմնական ուղղությունները։ Խմբերում ընդգրկված են մեկ-երկու հաստիքային և հինգից յոթ արտահաստիքային աշխատողներ, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ։ Նրանք պետք է մշտական հսկողության ներքո պահեն կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, սոցիալիստական սեփականության պահպանության, պարենային ծրագրի իրականացման, ինչպես նաև կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման և կուսշարքերի որակական աճի ապահովման հարցերը։

Նախատեսված է նաև քաղկոմ-շրջկոմների հետ միասին լրջորեն և հետևողականորեն զբաղվել բոլոր կուսհանձնաժողովների դերի և ակտիվության բարձրացման հարցերով, հիմնովին բարելավել նրանց աշխատանքը, բոլոր հանձնաժողովները դարձնել կուսակցական կոմիտեների հուսալի և մարտական օգնականը։ Այդ նպատակով սիստեմատիկաբար պետք է ուսումնասիրել կուսհանձնաժողովների աշխատանքը տեղերում, ուժեղացնել նրանց ցույց տրվող օգնությունն ու աջակցությունը, տարածել նրանց աշխատանքի առաջավոր և ուսանելի փորձը։ Առանձնահատուկ տեղ կտրվի մեր աշխատանքում նաև պրոֆիլակտիկ բնույթի միջոցառումներին և վերահսկողության լայն հրապարակայնությանը։

Կուսհանձնաժողովների ակտիվության ու նախաձեռնության զարգացումը լուրջ և կարևոր գործ է, այն բարերար ներգործություն կունենա մեր ողջ աշխատանքի բարելավման, հատկապես կարգապահության, կազմակերպվածության, կադրերի, կոմունիստների պատասխանատվության բարձրացման գործում։

---

Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀՈՒՆՈՎ

**Ս. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ**
Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի դիրեկտոր, տնտեսական գիտությունների թեկնածու

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման շահերն այսօր պահանջում են նոր, առավել առաջադիմական ու բարձրարդյունավետ տեխնիկայի ստեղծում ու ներդրում, աշխատանքի ու արտադրության գիտական կազմակերպում, հումքի, նյութերի, էներգիայի խնայողական տեսակների, տեխնոլոգիական առավել կատարյալ պրոցեսների մշակում, որի նպատակն է նվազագույն ծախսումներով հասնել առավելագույն արդյունքի։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան և ապրիլյան պլենումների որոշումների լույսի ներքո այսօր առավել կարևորվում են արտադրության տեխնիկական մակարդակի, ինտենսիվացման և արդյունավետության բարձրացումը, արտադրանքի միավորի հաշվով կենդանի և առարկայացված աշխատանքի ծախսումների հետևողական իջեցման անհրաժեշտությունը։

Ընթացիկ հնգամյակում իրականացվող տեխնիկական քաղաքականության գլխավոր իմաստը հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու հաշվով արտադրանքի թողարկման ավելացումն է։ Այդ նպատակով մշտապես աճում են մեքենաների և սարքավորումների միավորային կարողությունները, առանձին մեքենաների արմատավորումից անցում է կատարվում դեպի տեխնոլոգիական ամբողջ պրոցեսներ ընդգրկող մեքենայական սիստեմների մշակումն ու արմատավորումը, արտադրության աշխատատար տեսակների մեքենայացումն ու ավտոմատացումը և, առաջին հերթին, այն ճյուղերում, որտեղ զգալի թվով բանվորներ զբաղված են ձեռքի աշխատանքով։ Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը նպատակամղված է առավել պակաս գործողություններ պահանջող այնպիսի պրոգրեսիվ տեխնոլոգիաների զարգացմանը և ներդրմանը, որոնք առավելագույն չափով են տնտեսում ելահումքը, էներգիան, նյութերը, ապահովում շրջակա միջավայրի պահպանումը։

Մեր էկոնոմիկան թևակոխել է տասնմեկերորդ հնգամյակի վճռական փուլը, երբ առավել լարված ու պատասխանատու խնդիրներ են ծառանում արդյունաբերության աշխատողների առջև։ Մինչև այժմ մենք տնտեսական ցուցանիշները բարելավում էինք հիմնականում այն ռեզերվների հաշվին, որոնք գտնվում էին, ինչպես ասում են՝ ձեռքի տակ, մակերեսին։ Սակայն կուսակցության Կենտկոմի վերջին պլենումները մեզ հստակորեն կողմնորոշում են դեպի ժողովրդական տնտեսության որակական խոր փոփոխությունները։ «Մեզ համար բացարձակ անհրաժեշտություն է,— ասել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ և անընդհատ նորացումը գիտության և տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։



digitised by A.R.A.R.@

Սա մեր արմատական խնդիրներից մեկն է: Առանց դրա հասարակության
առաջընթացը պարզապես աներևակայելի է»:

Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի բանվորներն ու ինժեներա-
տեխնիկական աշխատողները, ողջ կոլեկտիվը մշտապես ձգտում են լինել
կուսակցության առաջադրած պահանջների մակարդակին: Նրանք խորապես
գիտակցում են իրենց աշխատանքի կարևորությունն ու անհրաժեշտությունը:
Գործարանի թողարկած արտադրանքը՝ բազմազան սարքերն ու ավտոմատ
հարմարանքները, լայն կիրառում ունի երկրի ժողովրդական տնտեսության
տարբեր բնագավառներում, էապես նպաստում է արտադրության մեքենայաց-
մանն ու ավտոմատացմանը, զարկ է տալիս տեխնիկական պրոգրեսին: Իսկ
այդ պատասխանատու դերը արժանավայել կատարելու համար անհրաժեշտ
է, որ ինքը՝ ավտոմատ սարքեր արտադրող ձեռնարկությունը, ընթանա տեխ-
նիկական պրոգրեսի առաջին շարքերում, մշտապես վերազինվի, անընդհատ
կատարելագործի իր տեխնիկական մակարդակը: Հիրավի, ձեռնարկությունում
իրականացվում է արտադրության տեխնիկական վերազինման պլանաչափ աշ-
խատանք: Ելնելով ընդհանուր, հնգամյա պլանից, յուրաքանչյուր տարվա հա-
մար մեզ մոտ կազմվում է գործարանի տեխնիկական վերազինման պլան,
որն ընդգրկում է նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման, տեխ-
նոլոգիական պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման միջոցառում-
ները: Այդ նպատակով պետությունը հսկայական միջոցներ է հատկացնում:
Միայն 1983 թ. տեխնիկական վերազինման՝ սարքավորումների նորացման և
տեխնիկական միջոցառումների ներդրման համար ծախսվել է ավելի քան մեկ
միլիոն ռուբլի:

Արտադրության մեջ ներդրվել է տեխնիկական վերազինման 138 միջո-
ցառում, որի շնորհիվ գործարանի արտադրական կարողությունն ավելացել է
1,2 միլիոն ռուբլով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 5,5
տոկոսով, և տարեկան պայմանական տնտեսական օգուտը հասել է 365 հազար
ռուբլու:

Պլաստիկ դեֆորմացիայով ստացվող դետալների առաջավոր տեխնոլո-
գիական պրոցեսի ներդրումը զգալիորեն նվազեցնում է արտադրվող կիսաավ-
տոմատ հաստոցների մետաղատարությունը, բարձրացնում պատրաստվող դե-
տալների ճշգրտությունը: Աշխատանքի արտադրողականությունը միայն այս
պրոցեսի ներդրման շնորհիվ բարձրանում է 1,6 տոկոսով: Գործարանում ներ-
դրված գալվանապատման նոր տեխնոլոգիական պրոցեսը փոխարինում է կա-
ղապարի մայր դետալների ստացման բարդ, մետաղատար և աշխատատար
պրոցեսին: Նոր եղանակի կիրառումը բարձրացրել է կաղապարի ամրությունը
և դիմացկունությունը, ինչպես նաև արտադրանքի որակը:

Կազմակերպվել և հաջողությամբ գործում է նաև էլեկտրաէռոզիային հաս-
տոցների տեղամասը: Այստեղ իրականացվում է դրոշմների կտրող մասերի
կածրությունը էլեկտրակայծային եղանակով բարձրացնելու առաջավոր տեխ-
նոլոգիական պրոցեսը: Նախկինում այդ տեխնոլոգիայի բացակայության պատ-
ճառով ավտոմեքենաների գլանակավարիչների իրանի ստացման դրոշմները
պատրաստվում էին ոչ կարծր համաձուլվածքներից: Ցածր էր այդ դրոշմների
ճշգրտությունը, բարձր՝ աշխատատարությունն ու մետաղատարությունը: Գլա-
նակավարիչների տարեկան առաջադրանքների կատարման համար պահանջ-
վում էր պատրաստել զգալի թվով դրոշմներ: Էլեկտրաէռոզիոն եղանակի ներ-
դրման շնորհիվ նույն ծավալի առաջադրանքը կատարելու համար շուրջ 6 ան-
գամ կրճատվեց օգտագործվող դրոշմների քանակը, զգալիորեն բարձրացավ
ստացվող դետալների որակը:

Միայն կերամիկական կապակցվող նյութերից պատրաստված կտրիչները,
որոնց տեխնոլոգիան յուրացվել է վերջերս, հնարավորություն է ընձեռել տըն-
տեսելու հազարավոր ռուբլիների նյութեր: Հավաքման արտադրամասում տե-
ղադրվել են մեքենայացված հավաքման սարքեր, դրոշմման-մամլման արտա-
դրամասում՝ պլաստմասսայի դետալների պատրաստումից և մշակումից ստաց-
վող թափոնների ավտոմատ աղաց, գալվանականում՝ դետալների մշակման



ավտոմատ սարք, գործիքային արտադրամասում ներդրվել է գործիքների
կտրող մասի ալմաստապատման պրոցեսը:

Անցած տարի գործարանում ստեղծվեց ավտոմատ հաստոցների նոր տե-
ղամաս, որը հնարավորություն ընձեռեց շուրջ 50 տոկոսով ավելացնելու պատ-
րաստվող դետալների քանակը:

Տեխնիկական բուռն առաջընթացը պահանջում է արտադրության մեջ ռո-
բոտների լայն կիրառում: Գործարանի ինժեներների ու տեխնիկների ուժերով
մեզ մոտ ստեղծվել է ռոբոտատեխնիկայի լաբորատորիա, որն արդեն ակտիվ
գործունեություն է ծավալել: Այսպես, եթե անցած տարվա ընթացքում ար-
տադրության մեջ ներդրվել է ընդամենը 12 ռոբոտ, ապա ընթացիկ տարվա
միայն առաջին կիսամյակում ներդրվել են 16 ռոբոտ ու ռոբոտատեխնոլոգիա-
կան կոմպլեքս: Ռոբոտներն այժմ կիրառվում են դրոշմման-մամլման, մեխա-
նիկական և հավաքման արտադրամասերի մի շարք տեխնոլոգիական պրոցես-
ներում, որի շնորհիվ նշված արտադրամասերում զգալիորեն կրճատվել է ձեռ-
քի աշխատանքը, շուրջ 2,3 տոկոսով բարձրացել աշխատանքի արտադրողա-
կանությունը:

Ընդհանուր առմամբ, ըստ գործարանի տեխնիկական վերազինման պլանի
ընթացիկ տարում կիրականացվի 140 միջոցառում: Այդ նպատակի համար
նախատեսված է 340 հազար ռուբլի, իսկ սարքավորումների նորացման հա-
մար՝ 800 հազար ռուբլի:

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում, կուսակցական մի շարք այլ
փաստաթղթերում կարևորվում է մետաղների ռացիոնալ օգտագործման, թա-
փոնների կրճատման և խնայողության խստագույն ռեժիմի կիրառման անհրա-
ժեշտությունը: Այդ խնդրի իրականացման հուսալի միջոցներից մեկը փոշե-
մետալուրգիայի լայն արմատավորումն է: Ընթացիկ տարում մեր գործարա-
նում ստեղծվում է մետաղափոշուց ստացվող դետալների մեքենայացված տե-
ղամաս: Դա նոր թափ կհաղորդի մետաղի որակի բարձրացման մեր աշխա-
տանքներին: Իսկ չէ որ մետաղի բարձր որակը նրա տնտեսման կարևոր նա-
խապայմանն է: Փոշեմետալուրգիայի կիրառումը նպաստում է նաև տեխնո-
լոգիական պրոցեսների կատարելագործմանը: Այն մշակման եղանակներից
բացառում է աշխատատար այնպիսի պրոցեսներ, ինչպես ձուլումը և մեխա-
նիկական վերամշակումը: Համոզիչ լինելու համար ասենք, որ մետաղափո-
շուց պատրաստված յուրաքանչյուր մեկ տոննա արտադրանքում տնտեսվում է
1,5 տոննա մետաղ: Այդ միջոցառման շնորհիվ արտադրության պրոցեսից
կրճատվում են զգալի թվով աշխատողներ և մետաղամշակման հաստոցներ:
Աշխատանքի արտադրողականությունն աճում է 2 անգամ, կապիտալ ծախ-
սումները նվազում են 3 անգամ: Նշված տեխնոլոգիական պրոցեսի կիրառումը
20—30 տոկոսով մեծացնում է արագակտրիչ գործիքների ստացման համար
նախատեսված մետաղի օգտագործման գործակիցը, 2—3 անգամ բարձրաց-
նում գործիքի դիմացկունությունը: Մետաղափոշուց պատրաստված մետաղը
ջերմային մշակման ժամանակ ավելի լավ է հղկվում և չի դեֆորմացվում:
Գործարանի տեխնիկական վերազինման պլանի համաձայն մինչև ընթացիկ
հնգամյակի վերջը նոր տեխնոլոգիան կկիրառվի ամենուր՝ իսպառ բացառելով
դետալների պատրաստման կոոպերացված եղանակը: Սակայն ինժեներական
միտքը կանգ չի առնում ձեռք բերվածի վրա: Մեր գործարանի փորձը ցույց է
տալիս, որ նոր մեթոդի արդյունավետությունը առավել բարձրանում է, երբ
մետաղափոշուց պատրաստվող դետալները վերամշակվում են թվածրագրային
կառավարմամբ հաստոցներով: Դրա շնորհիվ ավելանում է նաև ԹԾԿ հաս-
տոցների երկարակեցությունը, վերանում ձեռքի աշխատանքը, լուծվում պրո-
ցեսների ավտոմատացման և մեքենայացման խնդիրը: Հետաքրքրական է, որ
վերը նշված երկու պրոցեսներն էլ մեր հանրապետությունում կիրառվում են
առաջին անգամ:

Ընթացիկ տարում գալվանական արտադրամասում ներդրվելու են փայ-
լուն թթվակազմիավորման և ֆոտոպատճենահանման տեխնոլոգիական պրո-
ցեսներ, որոնց շնորհիվ տնտեսվում են նյութերը, կրճատվում աշխատատա-



digitised by A.R.A.R.@

բաճատիկ կառուցվածքը վերածվում է մանրաճատիկի՝ կրկնակի, եռակի անգամ ավելացնելով դետալի ամրությունը։

Նշված տեխնիկական և կազմակերպական միջոցառումների ներդրման շնորհիվ, ընթացիկ տարվա չորս ամսում ապրանքային արտադրանքի թողարկման պլանը կատարվել է 101,5 տոկոսով, աճը նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի նկատմամբ կազմել է 8 տոկոս։ Պլանից ավելի ժողովրդական տնտեսությանն է տրվել շուրջ 200 հազար ռուբլու սարքեր՝ տարեկան սոցպարտավորությամբ սահմանված 150 հազար ռուբլու փոխարեն։

Նորմատիվային զուտ արտադրանքի պլանը կատարվել է 102,6 տոկոսով, գերակատարվել են նաև արտադրանքի իրացման, ինքնարժեքի իջեցման, օգուտների պլանները։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել լայն սպառման ապրանքների արտադրության բնագավառում։ Կոլեկտիվն ապահովում է ժողովրդական սպառման համար նախատեսված ապրանքների բարձր որակը։ Այդ արտադրանքի 80 տոկոսը կրում է պետական որականիշ։

Չնայած կատարված զգալի աշխատանքներին, արտադրության արդյունավետության և տեխնիկական մակարդակի բարձրացման ամենևին էլ ոչ բոլոր ռեզերվներն ու հնարավորություններն են օգտագործվել։ Մասնավորապես Կիրովական քաղաքի տնտեսական զարգացմանը խթանող կարևոր գործոն կհանդիսանային ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների գիտատեխնիկական առաջընթացի արագացման կոմպլեքսային ծրագրի մշակումն ու իրականացումը։ Այդպիսի ծրագիրը կարող էր ընդգրկել գիտահետազոտական հաստատությունների, ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների, գործարանների համատեղ աշխատանքը, դրա շնորհիվ նրանց ստեղծագործական միտքը կկոորդինացվեր և կնպատակամղվեր գիտատեխնիկական նվաճումների ներդրմանը։

Պարզ է, որ գիտատեխնիկական առաջընթացն իրականացնում են նախ և առաջ որակյալ կադրերը, ուստի առաջընթացի տեմպը վերջին հաշվով պայմանավորված է մարդկանց գիտական ու տեխնիկական ունակությամբ և կարողություններով։ Այս առումով գիտատեխնիկական առաջընթացի արագացման նոր խթան կհանդիսանա ժողովրդական կրթության ռեֆորմի իրականացումը։ Բացի այդ, քաղաքի բարձրագույն ուսումնական հաստատություններում կադրերի որակավորման և մասնագիտացման պրոցեսը պետք է համապատասխանեցվի արդյունաբերության հեռանկարային զարգացման շահերին, այն հաշվով, որպեսզի ձեռնարկությունները ժամանակին համալրվեն մասնագետ կադրերով։ Տվյալ դեպքում մենք նկատի ունենք լազերային բարդ տեխնիկային, փոշեմետալուրգիային, ռոբոտատեխնիկային և մյուս արդի մասնագիտություններին տիրապետող կադրերին։ Նպատակահարմար է մշակել նաև կադրերի պատրաստման կոմպլեքսային ծրագիր, որը միավորեր և խթաներ ձեռնարկությունների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների, դպրոցների և մյուս կազմակերպությունների ու հիմնարկությունների համատեղ նպատակասլաց աշխատանքը։

Ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացումը, որին նպատակամղված է նաև տեխնիկական առաջընթացը, բազմապլան, բարդ և ստեղծագործական աշխատանք է, որը պահանջում է կոմպլեքսային մոտեցում, աշխատավորական բոլոր կոլեկտիվների ջանքերի համատեղում։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների դոկտոր

Աշխատանքի արտադրողականությունը՝ որպես միավոր ժամանակում թողարկված արտադրանքի քանակություն, կամ արտադրանքի միավորի վրա ծախսված աշխատաժամանակ, արտահայտում է կենդանի և հասարակական (ամբողջական) աշխատանքի օգտագործման արդյունավետությունը։ Կարևորելով կոմունիստական հասարակարգի կառուցման գործում աշխատանքի արտադրողականության բարձրացման վճռական դերը, Վ. Ի. Լենինը գրել է. «Կոմունիզմը կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է կապիտալիստականի համեմատությամբ» (ԵԼԺ, հ. 39, էջ 26)։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման արդի փուլում հատկապես մեծանում է աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակությունը։ Կուսակցության Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում շեշտվեց, որ տնտեսական ոլորտում հանգուցային խնդիրը աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացումն է և այդ բնագավառում բարձրագույն համաշխարհային մակարդակին հասնելը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումն առաջադրեց կարևորագույն կոնկրետ խնդիր՝ ապահովել աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային աճ և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ կրճատում 0,5 տոկոսով։ Դա համարվեց որպես կուսակցության լրացուցիչ առաջադրանք պլանին, որին, ինչպես նշում է ընկ. Կ. Ու. Չեռնենկոն, երկրի աշխատավորական կոլեկտիվներն արձագանքեցին լայնորեն ու հայրենասիրական խանդավառությամբ, եռանդով ու գործարարությամբ։

1951—1952 թվականներին մեր երկրում ընդհանուր առմամբ հասարակական աշխատանքի արտադրողականությունն աճել է տարեկան 6,1 տոկոսով։ Համեմատության համար նշենք, որ այդ ցուցանիշը նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ում կազմել է 1,9 տոկոս։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության միջին տարեկան աճը վերջին երեք տասնամյակների ընթացքում կազմել է 5,5 տոկոս։

Սակայն վերջին տարիներին նկատվում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի որոշ դանդաղում։ Այսպես, եթե 1966—1975 թվականներին արտադրողականության աճի միջին տարեկան տեմպերը կազմել են ՍՍՀՄ արդյունաբերության մեջ 5,9, ՀՍՍՀ արդյունաբերության ճյուղում՝ 5,2 տոկոս, ապա 1976—1982 թվականներին՝ համապատասխանաբար՝ 2,7 և 2,8 տոկոս։ Առանձին տարիներին նաև թերակատարվել են աշխատանքի արտադրողականության աճի պլանային առաջադրանքները։ Սակայն, սկսած 1983 թ.,



digitised by A.R.A.R.@

(բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման մակարդակի բարձրացում, սարքավորումների և գործիքների նորոգման կազմակերպում մասնագիտացված ձեռնարկություններում) հնարավոր է էականորեն արագացնել աշխատանքի արտադրողականության աճը։ Ի դեպ, այս պրոբլեմը առաջին անգամ չէ որ բարձրացվում է, բայց լուրջ դրական տեղաշարժեր դեռևս չեն նկատվում։

Ընթացիկ հնգամյակում հանրապետության շրջաններում և փոքր քաղաքներում արդյունաբերության արտադրանքն աճում է ավելի արագ, քան արդյունաբերական խոշոր կենտրոններում։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի 88,8 տոկոսը թողարկվում է երեք խոշոր քաղաքներում և ինը շրջաններում։ Տասներորդ հնգամյակում աշխատանքի արտադրողականությունը հանրապետության արդյունաբերության միջինի (21 տոկոս) համեմատությամբ դանդաղ է աճել Երևանում (18 տոկոս), Լենինականում (19 տոկոս), Արտաշատի (5 տոկոս), Ղափանի (10 տոկոս), Հրազդանի (2 տոկոս), Թումանյանի (13 տոկոս) շրջաններում, իսկ Արարատի շրջանում այն նվազել է 15 տոկոսային կետով։ Թվարկված քաղաքներում և շրջաններում (բացառությամբ Երևան քաղաքի և Հրազդանի շրջանի) աշխատանքի ֆոնդազինվածությունն աճել է ավելի արագ, քան աշխատանքի արտադրողականությունը։ Անշուշտ, արտադրության արդյունավետության աճի արագացման ռեզերվներն անհրաժեշտ է բացահայտել ու օգտագործել նախ և առաջ նշված քաղաքների ու շրջանների արդյունաբերական ձեռնարկություններում։

Աշխատանքի արտադրողականության աճի կարևոր ուղղություններից է աշխատանքային, պլանային, մատակարարման, տեխնոլոգիական կարգապահության ամրապնդումը։ Դրա շնորհիվ կնվազեն աշխատաժամանակի ամբողջօրյա և ներհերթափոխային կորուստները, կկրճատվեն գործալքումները, աշխատուժի հոսունությունը։

Արդյունաբերության մեջ աշխատաժամանակի կորուստները մեկ բանվորի հաշվով վերջին տարիներին կազմում են 2,2—2,8 և ունեն կրճատման միտում։ Ընդ որում այդ կորուստների 47,2 տոկոսը առաջանում են ձեռնարկությունների ղեկավարության թույլտվությամբ աշխատանքից բացակայելու, 29,9 տոկոսը՝ գործալքումների պատճառով։ Դրական է, որ աշխատուժի հոսունությունը հանրապետության արդյունաբերության մեջ ունի նվազման միտում, սակայն դրա մակարդակը դեռևս բարձր է։ Ընդ որում հոսունություն առաջացնողների 8—9 տոկոսը կազմում են գործալքումների և աշխատանքային կարգապահության զանազան խախտումների պատճառով աշխատանքից ազատվողները։

Կարևոր նշանակություն ունի նյութատեխնիկական մատակարարման կատարելագործումը և տրանսպորտի զարգացումը։ Բավական է նշել, որ աշխատաժամանակի ներհերթափոխային կորուստների ավելի քան 30 տոկոսը նյութատեխնիկական մատակարարման համաչափության խախտումների հետևանք է։ Այստեղից ակներև է մատակարարման կարգապահության ամրապնդման անհրաժեշտությունը, որի հետևանքով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։

Արտադրության ծավալի ցուցանիշների ճշգրտումը (որպես կանոն՝ իջեցումը) սովորաբար չի ուղեկցվում աշխատողների թվի համապատասխան փոփոխությամբ։ Դրա հետևանքով գոյանում է աշխատողների գերպլանային թվաքանակ, որը հանգեցնում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի նվազմանը։

Աշխատուժի օգտագործման արդյունավետության աճի գործոն է նաև հերթափոխայնության գործակցի բարձրացումը։ Այն արդյունաբերության մեջ այժմ հավասար է 1,34-ի՝ 1979 թ. 1.37-ի փոխարեն։ Ասենք, որ այդ գործակիցը նշված ժամանակաընթացքում 0,05 կետով նվազել է նաև հիմնական արտադրամասերում։ Ցածր է նաև սարքավորումների հերթափոխայնության գործակիցը։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. հունվարյան պլենումում, հիմնական արտադրության մեջ սարքավորումների հերթափոխայնության գործակցի պլանային մակարդակը ամբողջությամբ վերցրած չեն ապահովել էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, քիմիական մեքենաշինության, սարքաշինության, թեթև ու սննդի մեքենաշինության ճյուղերը, իսկ որոշ ձեռնարկություններում 1983 թ., 1982-ի համեմատությամբ, նվազել է այդ գործակիցը։ Հերթափոխայնության գործակցի բարձրացումը հնարավորություն կընձեռի ռացիոնալ օգտագործելու հիմնական ֆոնդերը, կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, քանի որ հերթափոխությունների թվի ավելացմամբ ղեկավար, ինժեներատեխնիկական աշխատողների, ծառայողների և բանվորների թիվը նույն համամասնությամբ չի աճում։ Հերթափոխայնության գործակցի բարձրացումը միաժամանակ հնարավորություն կընձեռի արդյունաբերության մեջ լրացուցիչ ընդգրկելու նոր աշխատանքային ռեսուրսներ։ Իսկ դա շատ կարևոր նշանակություն ունի հանրապետությունում աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածության ապահովման համար։

Ակնհայտ է, որ առկա են աշխատուժի օգտագործման արդյունավետության աճի արագացման իրական հնարավորություններ, իսկ դրանց բացահայտումն ու օգտագործումը թելադրվում է կուսակցության տնտեսական ստրատեգիայի հանգուցային խնդրով՝ աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացման օբյեկտիվ անհրաժեշտությամբ։ Խոսելով տասներկուերորդ հնգամյակի մասին, ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն նշեց. «Նոր հնգամյակը նախ և առաջ պետք է դառնա արտադրության մեջ որակական նոր փոփոխությունների սկիզբը, դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ։ Ժամանակակից նյութատեխնիկական բազան և կառավարման համակարգը պետք է ձեռք բերեն նոր, ավելի բարձր հատկանիշներ»։ Ուստի, աշխատանքի արտադրողականության աճի արագացումը՝ որպես արտադրության ինտենսիվացման վճռական նախադրյալներից մեկը, ինչպես այժմ, այնպես էլ ապագայում ունի կարևորագույն սոցիալ-տնտեսական նշանակություն։

Անշուշտ, արտադրողականության բարձրացումը չի նշանակում միայն կենդանի աշխատանքի արդյունավետ օգտագործում։ Լայն առումով այն նաև արտադրության մեջ ներգրավված նյութական ռեսուրսների տնտեսում է։ Կենդանի և առարկայացած աշխատանքի արդյունավետ օգտագործման միասնական պրոցեսը կառավարելու համար, բնականաբար, տնտեսական ու սոցիալական զարգացման պլանի ցուցանիշների համակարգում անհրաժեշտ է ունենալ համապատասխան պլանային ցուցանիշ։ Որպես այդպիսին, ինչպես արդեն նշվել է, հասարակական (ամբողջական) աշխատանքի արտադրողականությունն է, որը կարող է հաշվարկվել և պլանավորվել տնտեսավարման բոլոր օղակներում՝ ձեռնարկություններից մինչև ամբողջ ժողովրդական տնտեսություն։ Այն ըստ էության արտադրության տնտեսական արդյունավետության ընդհանրական ցուցանիշ է։ Ցավոք, այսօր ամբողջական աշխատանքի արտադրողականությունը պլանավորման ու վիճակագրության պրակտիկայում դեռևս չի կիրառվում։ Մինչդեռ այն, կենդանի աշխատանքի արտադրողականության ցուցանիշի հետ մեկտեղ, հնարավորություն կընձեռի ավելի լրիվ բնութագրելու արտադրության մեջ կիրառվող ողջ աշխատանքի (կենդանի և առարկայացած) օգտագործման արդյունավետությունը, ինչպես նաև արտադրության ինտենսիվացման իրական մակարդակը։ Ահա թե ինչու, անհրաժեշտ է տնտեսական և սոցիալական զարգացման պլաններում տնտեսավարման բոլոր օղակների համար սահմանել առաջադրանք ամբողջական աշխատանքի արտադրողականության ցուցանիշի վերաբերյալ, որը կնպաստի արտադրության տնտեսական արդյունավետության, դրա ինտենսիվացման կառավարման կատարելագործմանը։



digitised by A.R.A.R.@

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ, որպես հասարակական աշխատանքի կարևոր ոլորտ, կոչված է ապահովելու ինչպես աշխատանքի հասարակական պրոցեսի առանձին մասնակիցների, այնպես էլ կոլեկտիվների նպատակամղված, կոորդինացված գործունեությունը՝ նրանց առջև դրված խնդիրների լուծման նպատակով։ Կուսակցությունը մշտապես հոգում է կառավարչական աշխատանքի և ընդհանուր առմամբ արտադրության, հասարակական կյանքի մյուս բնագավառների կառավարման կատարելագործման, այդ աշխատանքի արդյունավետության բարձրացման մասին։

Կառավարման հարաբերությունները, որպես արտադրահարաբերությունների ձև, հիմնվում են տվյալ հասարակական ֆորմացիայում գործող տնտեսական օրենքների համակարգի վրա։ Կառավարման պրոցեսում այդ օրենքների կիրառումը ենթադրում է դրանց համատեղ գործողության բոլոր գործոնների կոմպլեքսային հաշվառում։ Մոտալուտ հեռանկարում առաջին պլան է մղվում միջտնտեսական կապերի հաշվեկշռվածության մակարդակի էական բարձրացման, ինչպես նաև աշխատաժամանակի տնտեսման տեմպերի արագացման անհրաժեշտությունը։ Երկու նպատակներն էլ սերտորեն կապված են միմյանց հետ։ Միայն ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով աշխատանքի լավ հաշվեկշռված կոոպերացումը կարող է գործնականորեն ապահովել դրա բարձր արդյունավետությունը։ Միաժամանակ, առանց խնայողության խստագույն ռեժիմի, որն ամենից առաջ արտահայտվում է վերջնական արտադրանքի միավորի վրա կատարվող տեսակարար ծախսերի նվազեցման մեջ, անհնար է ներգաշնակել պահանջմունքներն ու ռեսուրսները, այսինքն ապահովել ժողովրդական տնտեսության հաշվեկշռված, համամասնական զարգացումը։

Ժողովրդական տնտեսության կառավարման և պլանավորման կատարելագործման պրոբլեմն առանձնապես սրությամբ է դրված ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումներում։ Ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշել է. «Մենք պետք է պարտադրաբար ամրապնդենք կենտրոնացված կառավարումն ու պլանավորումը, հասնենք դրանց առավել գործունեության և ճկունության։ Պետք է գործն այնպես կազմակերպել, որ համապետական տնտեսական մարմիններն իրենց բոլոր ուժերը նպատակամղեն երկրի համար իրոք հանգուցային նշանակություն ունեցող հարցերի լուծմանը։ Իսկ նրանց ներկայիս ինչ-որ հոգսեր միանգամայն կարող են ստանձնել ստորադաս կազմակերպությունները՝ ճյուղային կամ տեղական»։ Հետևաբար, տնտեսական մեխանիզմի կատարելագործման պրոցեսի միտումը կենտրոնական ապարատի բեռնաթափումն է այն բազմաթիվ, թեպետև սուր, բայց օպերատիվ պրոբլեմներից, որոնք պետք է լուծվեն ճյուղային կամ տեղական մակարդակով։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, դրա հետագա դեմոկրա-



տացումը նպաստում է այդ բարդ տնտեսական խնդիրների լուծմանը։ Ընդսմին
աշխատանքային կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի ներգրավումը
կառավարմանն ուղեկցվում է աշխատանքի վերջնական արդյունքների համար
նրանց սոցիալ-արտադրական ակտիվության, նախաձեռնության և ռեալ պա-
տասխանատվության բարձրացմամբ։ Դա ապահովում է պլանների, ինչպես
նաև ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող այլ որոշումների կատար-
ման համար այդ մարմինների ապարատների աշխատողների վարչական, քա-
ղաքական, ինչպես նաև նյութական պատասխանատվության բարձրացմամբ։
խոսքը վերաբերում է կառավարման կենտրոնական, ճյուղային և տերիտո-
րիալ մարմինների ինչպես առանձին աշխատողների, այնպես էլ օղակների
աշխատանքի առավել հստակ կազմակերպմանը, նրանց իրավասության տակ
գտնվող հարցերի լուծման գործում ստեղծագործական նախաձեռնության և
ինքնուրույնության զարգացմանը։ Առաջիկա տարիներին այդ մարմինների աշ-
խատանքի որակի գլխավոր չափանիշներից մեկը կլինի նրանց կողմից ղեկա-
վարվող օբյեկտներում առկա գիտաարտադրական պոտենցիալի իրացման
աստիճանը։

Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման նկատմամբ կառա-
վարման կենտրոնական մարմինների ուղղություն տվող և կոորդինացնող ներ-
գործությունն աչքի է ընկնում մեթոդների ու եղանակների մեծ բազմազանու-
թյամբ։ Դրանցում հիմնականը ժողովրդատնտեսական պլանավորումն է՝ կա-
ռավարման միջուկը։ Այստեղ արտադրական յուրաքանչյուր կոլեկտիվի գոր-
ծունեության հստակ խնդիրների ու նորմատիվների մեջ արտահայտվում են
ողջ հասարակության գիտական գիտելիքները և պրակտիկ փորձը։ Ժողովր-
դատնտեսական պլանը տնտեսական և սոցիալական զարգացման ամբողջա-
կան գիտական կանխատեսման մեջ միավորում է աշխատավոր մասսաների
կամքն ու շահերը։ Ուստի պլանավորման որակը մեծապես կանխորոշում է
կառավարման ողջ համակարգի արդյունավետությունը, հետևաբար նաև էկո-
նոմիկայի զարգացման վերջնական արդյունքները։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVI
համագումարի որոշումներում պլանավորման որակի բարձրացման հարցերը
առաջին պլան մղվեցին բոլոր այն միջոցառումների համակարգում, որոնք անց-
կացվում են էկոնոմիկայի բնագավառում։

Սոցիոլոգիական հետազոտությունները ցույց են տալիս, որ ձեռնարկու-
թյունների ղեկավարները և աշխատանքային կոլեկտիվներն առաջին հերթին
կուզենային ունենալ հեռանկարի կայուն, ռեալ պլան։ Եվ դա բնական է. նրանց
գործունեության արդյունավետությունը շատ բանով կախված է այն բանից,
թե որքանով է ճիշտ նրանց կողմնորոշումը, առանց որի անհնար է լուրջ հա-
ջողություններ ակնկալել։

Ինչպես Միության, այնպես էլ հանրապետության շատ ձեռնարկություն-
ների պրակտիկայից վերցված բազմաթիվ օրինակները վկայում են, որ տըն-
տեսական մաների համար ժամանակի սահմանների ընդլայնումը հաճախ հա-
մարժեք է ռեսուրսների ավելացմանը։ Միայն երկարաժամկետ պլանավորումն
է աշխատանքային կոլեկտիվներին հնարավորություն ընձեռում բարձր վերջնա-
կան արդյունքների հասնելու համար ռեզերվները մոբիլիզացնելու գործում
դրսևորելու տնտեսական հոգատարություն և նախաձեռնություն։ Ուստի ամե-
նաանհրաժեշտը բուն պլանային աշխատանքում, որպես ժողովրդական տըն-
տեսության բոլոր օղակների փոխներգործության մեջ կայուն համամասնու-
թյան և համաձայնեցվածության պահպանման համար ելակետային նախա-
դրյալի, կարգուկանոն հաստատելն է։

Ներկայումս ամբողջ պլանային աշխատանքը նպատակամղվում է հեռա-
նկարում լուծվելիք պրոբլեմների խոր, կոմպլեքսային մշակմանը։ Դրա համար
անհրաժեշտ է ավելի լավ հաշվեկշռել պլանի բաղադրամասերը, ներդնել առա-
վել կատարյալ ցուցանիշներ, դրանով իսկ բարենպաստ նախադրյալներ ստեղ-
ծել առաջադրված խնդիրների կենսագործման համար։ Դա ապահովում է առան-
ձին տեխնիկական, տնտեսական ու սոցիալական պրոբլեմների և ամբողջու-
թյամբ վերցրած նրանց միջև գոյություն ունեցող փոխադարձ կապերի խոր





digitised by A.R.A.R.@

կին տեսնելը և որակական կառուցվածքային տեղաշարժերի ժամկետներն ու
ձևերը որոշելն է: Երբեմն գտնում են, որ ստրատեգիական հարցերի մշակումը
միայն տնտեսական ղեկավարման բարձրագույն մարմինների ֆունկցիան է:
Դա ճիշտ չէ: Յուրաքանչյուր ղեկավար պետք է ունենա կառավարվող օբյեկտի
հեռանկարային զարգացման իր ըմբռնումը, այսինքն՝ ունենա իր ստրատե-
գիան (ընդհանուր ստրատեգիայի շրջանակներում): Այլապես նա կդառնա ոչ
թե ղեկավար, այլ սոսկ կատարող: Այդպիսի ստրատեգիական հարցերին են
վերաբերում վերակառուցումը և տեխնիկական վերազինումը, սոցիալական
հարցերի լուծումը, տնտհաշվարկի կամ որակի վերահսկման համակարգի
կարգավորումը: Բայց միշտ էլ պետք է առանձնացնել գլխավոր խնդիրը, իսկ
երբեմն մի քանի նման խնդիրներ, որոնց լուծումը կօգնի իրականացնելու
ձեռնարկության զարգացման պրոբլեմների կոմպլեքսն ամբողջությամբ
վերցրած:

Միության և մեր հանրապետության առաջավոր ձեռնարկություններում՝
«Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումներում,
Հրազդանի ՊՇԷԿ-ում, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանում, Լենինա-
կանի մսի կոմբինատում, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում և
այլուր, մշակվում են սոցիալական զարգացման հեռանկարային պլաններ: Ընդ
որում դրանց կազմմանը մասնակցում են գիտական-սոցիոլոգներ, որոնք
կոլեկտիվում նախապես անցկացնում են հատուկ հետազոտություններ, ի հայտ
բերելով այն հանգույցները, ուր բախվում են տարբեր շահեր, ցույց են տալիս
զարգացման դժվարությունները և դրական միտումները: Այլ խոսքով, կոլեկ-
տիվի ղեկավարման ստրատեգիան փոխադրվում է գիտական հիմքի վրա:

Ղեկավարից պահանջվում է նաև նորի զգացում, ապագայի առաջին ծի-
լերը պաշտպանելու պատասխանատվությունն իր վրա վերցնելու պատրաս-
տակամություն, երբ տակավին գործի հաջող ելքի վերաբերյալ լրիվ ինֆորմա-
ցիա չկա: Ընդսմին բավական չէ օգտակար ձեռնարկումը հավանության ար-
ժանացնելն ու նախաձեռնողներին գովաբանելը: Անհրաժեշտ է անմիջականո-
րեն նպաստել գործերի սովորական ընթացքը վերակառուցելու, իսկ երբեմն էլ
դրանում բեկում մտցնելու խնդրին: Հաճախ հարկ է լինում գործադրել համա-
ռություն և կրքոտություն, հաղթահարել աշխատանքի քարացած ձևերի ու մե-
թոդների կողմնակիցների դիմադրությունը:

Ժամանակակից ղեկավարն է՛լ ավելի մեծ չափով է դառնում սոցիալ-տըն-
տեսական պրոցեսների վերլուծող ու հետազոտող: Նրա աշխատանքում ավելի
մեծ տեղ է զբաղեցնում վերլուծությունը, այդ թվում արտադրական ռեսուրս-
ների, հատկապես կապիտալ ներդրումների օգտագործման զանազան աս-
պեկտների, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի օգտակար հատուցման ռեալ
գնահատականի, ինչպես նաև աշխատող անհատի զարգացման վրա դրանց
ազդեցության վերլուծությունը: Ղեկավարը կազմակերպում և ուղղություն է
տալիս ձեռնարկությունում տարվող ամբողջ վերլուծական աշխատանքին: Ան-
տարակույս, ֆունկցիոնալ ծառայություններն ավելի որակյալ և խոր վերլու-
ծության են ենթարկում ու հետազոտում առանձին ցուցանիշները (ինքնար-
ժեքը, արտադրողականությունը, զուտ արտադրանքի ծավալը, շահութաբերու-
թյունը և այլն): Սակայն միայն ղեկավարը կարող է այդ ամբողջ ինֆորմա-
ցիան միացնել այնպես, որ ստացվի աշխատանքային կոլեկտիվում առկա փո-
խադարձ կապերի ընդհանուր պատկերը, նրան տալ ամբողջականություն և
ձևակերպել կոլեկտիվի զարգացման որոշակի կոնցեպցիան: Հենց դրանում
է ղեկավարի վերլուծական գործունեության գլխավոր առանձնահատկությունը:
Նրա համար վերլուծությունը ոչ այնքան տվյալների ու թվերի ընդհանրացում
է, որքան նոր գաղափարների մշակում, արտադրության նոր ասպեկտների լու-
սաբանում և ղեկավարման ստրատեգիայի ու տակտիկայի մշակում:

Ղեկավարն իր դիրքով ձեռնարկությունում ամենաիրազեկ անձն է և, այ-
դուհանդերձ, նա հավաքում և ուսումնասիրում է լրացուցիչ շատ տեղեկու-
թյուններ, տարբեր մարդկանց դիտողություններ, որոնք հնարավոր չէ միշտ
ստանալ վարչական ուղիներով: Ինչպես ռազմաճակատի հրամանատարը, ճա-



կատամարտից առաջ ստանալով հետախուզության բոլոր տվյալները, երկար
ժամեր անցկացնում է առաջավոր գծում, որպեսզի հակառակորդի և առաջիկա
օպերացիայի վայրի վերաբերյալ սեփական պատկերացում կազմի, այնպես
էլ տնտեսական ղեկավարը, ստանալով ֆունկցիոնալ ծառայությունների վերլու-
ծական նյութը, սովորաբար դրանք համեմատում ու ճշտում է տեղում՝ ար-
տադրամասերում և աշխատատեղերում, որպեսզի մշակի իրերի նկատմամբ
իր որոշակի չափով սուբյեկտիվ հայացքը, որն անհրաժեշտ է արտադրության
կազմակերպական կառուցվածքի վրա ներգործման նրա անհատական ոճի
համար:

Բանն այն է, որ ղեկավարը վերլուծում է կոմպլեքսորեն: Նման մոտեցման
դեպքում ճյուղը, միավորումը, ձեռնարկությունը դիտվում է որպես մի համա-
կարգ՝ կազմված աշխատանքի բաժանման հիման վրա գործող համեմատաբար
անջատ (տեխնոլոգիական, տնտեսական և կառուցվածքային առումով) օղակ-
ներից: Միաժամանակ դրանք բոլորն էլ փոխադարձաբար կապված են և ընդ-
հանուր վերջնական նպատակին հասնելու առումով կազմում են որոշակի
միասնություն, ամբողջականություն: Ընդ որում այն հատկությունները, որ
ունի համակարգը, օրինակ, ձեռնարկությունը, տարբերվում են նրա տարրերը
կազմողների (արտադրամասեր, տեղամասեր, բրիգադներ և այլն) հատկու-
թյուններից և դրանց պարզ միագումարը չեն: Սրանից հետևում է, որ ամբողջ
կոլեկտիվի աշխատանքը վերլուծելիս անհրաժեշտ է հատկապես ուշադիր հե-
տևել յուրաքանչյուր օղակի շահերի փոխներգործությանն ու ազդեցությանը և
կանխատեսել, թե այս կամ այն որոշումը ստորաբաժանումների և ամբողջ
ձեռնարկության գործունեության վրա ինչպիսի հետք կթողնի:

Սոցիալական հարցերի, հետևապես և մարդու, կոլեկտիվի պահանջմունք-
ների նկատմամբ մտահոգությունը ժամանակակից ղեկավարի բնորոշ գիծն է:
Շատ ձեռնարկություններում պրակտիկա է դարձել, որ դիրեկտորը կուսակցա-
կան և արհմիութենական կազմակերպությունների ներկայացուցիչների հետ
միասին պարբերաբար հանդիպում է բանվորների և ինժեներատեխնիկական
անձնակազմի հետ: Նա ինֆորմացիա է տալիս պլանային առաջադրանքների
կատարման ընթացքի և զարգացման հեռանկարների մասին, պատմում է դժ-
վարությունների և չլուծված հարցերի մասին, հայտնում, թե ինչ է արվել
իրենց վերջին հանդիպումից հետո: Նա միաժամանակ լսում է կոլեկտիվի ան-
դամների կարծիքը: Սոցիալական հարցերն իրենց դինամիզմով ամենևին էլ
չեն զիջում գիտատեխնիկական առաջընթացի խնդիրներին: Բնական է, որ
տնտեսական ղեկավարների կողմից սոցիալական պրոբլեմներին հատկացվող
ուշադրությունը, հետևաբար նաև ժամանակի բաժինը անշեղորեն աճում են,
և նման միտումը կպահպանվի հեռանկարում: Եվ դա բնական է. արտադրա-
կան գործունեության վերջնական արդյունքներն ավելի մեծ չափով են պայմա-
նավորվում աշխատանքի, այդ թվում նաև գիտության ու տեխնիկայի նվա-
ճումների օգտագործման նկատմամբ մարդկանց վերաբերմունքով:

Ժողովրդական տնտեսության զարգացման այս հրատապ հարցերի կոմպ-
լեքսի լուծմանն է նպատակամղված արտադրամիավորումների իրավունքնե-
րի ընդլայնման և վերջնական արդյունքների համար նրանց պատասխանա-
տվության ուժեղացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների
խորհրդի 1983 թ. որոշումը: Ներկայումս իրականացվող տնտեսափորձը նախ
և առաջ պայմանավորված է ժողովրդական տնտեսության կառավարման հա-
մակարգում միջօղակային կապերի բնույթի էական փոփոխություններով: Ձեռ-
նարկվող միջոցառումները նպատակամղված են կառավարման արդյունավե-
տության բարձրացմանը բոլոր մակարդակներով՝ տեխնոլոգիական պրոցես-
ների ավտոմատացումից մինչև տնտեսական մեխանիզմի կատարելագործու-
մը: «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացն
արագացնելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստր-
ների խորհրդի որոշմամբ և վերջին շրջանի կուսակցական մի շարք այլ փաս-
տաթղթերով խիստ կարևորվել է այդ խնդիրը, որի հետևողական լուծումը մի
նոր մակարդակի կբարձրացնի կառավարման բարդ համակարգը:

digitised by A.R.A.R.@

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԼԱՎ ԴՊՐՈՑ

**Վ. ԿՈՎԱԼԵՆԿՈ**
Պատմական գիտությունների թեկնածու,
պահեստի գնդապետ

ԵԿՈՂ ՏԱՐԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորները, ողջ առաջադեմ մարդկությունը հանդիսավորությամբ կնշեն ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 40-րդ տարեդարձը։ Սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը մեծ Հայրենականում կատարած իրենց հերոսական սխրանքով ոսկետառ էջեր գրեցին մարդկության պատմության մեջ։

Ժողովրդի հիշողությունը ոչ միայն պահպանում է իրենց կյանքը հայրենիքին զոհաբերած որդիների ու դուստրերի հերոսական կերպարները, այլև աճող սերնդին սովորեցնում է, թե ինչպես բազմապատկել հայրերի և պապերի աշխատանքային ու մարտական փառքը։ Մեծ տոնի առթիվ կազմակերպվող միջոցառումները նպաստում են երիտասարդության շրջանում տարվող ռազմահայրենասիրական դաստիարակության մակարդակի բարձրացմանը։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է հեղափոխական և մարտական ավանդույթների դաստիարակչական նշանակությունը՝ շեշտելով, որ հեղափոխական պայքարի օրինակները մեզ համար փարոս պետք է ծառայեն նոր սերունդներ դաստիարակելու գործում (տե՛ս ԵԼԺ, հ. 17, էջ 59)։ Վլադիմիր Իլյիչը հետևողականորեն կոչ էր անում արմատավորել, զարգացնել և ամրապնդել հեղափոխական ավանդույթները, սովորույթներն ու համոզմունքները, որ բանվոր դասակարգը շատ տասնամյակների ընթացքում իր մեջ մշակել է քաղաքական ազատության համար մղած պայքարում (հ. 41, էջ 479)։

ՍՄԿԿ-ն, Վ. Ի. Լենինի պատգամներին հավատարիմ, անհրաժեշտ ամեն ինչ անում է, որպեսզի սովետական երիտասարդությունը զարգացնի ու բազմապատկի կուսակցության, ժողովրդի և նրա զինված ուժերի աշխատանքային ու մարտական մեծագործությունները։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշման մեջ նշված է, որ կուսակցությունը մշտապես հոգ է տանում աճող սերնդի մասին, որ անհրաժեշտ է նրա մեջ «Սեր պատվաստել ՍՍՀՄ զինված ուժերի նկատմամբ, ամրապնդել պատրաստակամությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, «Հայաստան» հրատ., 1983 թ., էջ 89)։

Սովետական երկրի տարեգրությունը պահպանել է հայրենիքի ազատության և անկախության համար հեղափոխական պայքարում զոհված շատ ու շատ հերոսների անուններ։ Անդրկասպիականի ավազուտներում գնդակահարված 26 կոմիսարները խորհրդանշում են գաղափարական համոզվածության, հեղափոխության գործին անսահման նվիրվածության ամենավառ օրինակը։ Ժողովրդի երջանկության համար իրենց կյանքը զոհաբերած հեղափոխականների սխրանքը դաստիարակչական մեծ նշանակություն ունի սերունդների համար։

Ժողովրդի երջանկության հերոսական պայքարի հիանալի ավանդույթները ոչ թե թանգարանային ցուցանմուշներ են, այլ հավերժ կենդանի օրինակներ, որոնք էստաֆետի պես փոխանցվում են սերնդե-սերունդ։ Կուսակցության և ժողովրդի հերոսական ավանդույթներն առանձնապես դրսևորվեցին Հայրենական մեծ պատերազմում։ Դրա առաջին իսկ օրերից իրենց մարտական դրոշներն անմար փառքով պսակեցին լեգենդար Բրեստի ամրոցի, հեղափոխության օրրան Լենինգրադի, Սևաստոպոլ և Օդեսա կարևորագույն ռազմածովային բազաների պաշտպանները։ Սովետական ռազմիկների հերոսությունն անսահման էր. օդաչուները օդային մարտերում հաճախ խոյահարելու էին գնում ֆաշիստական գիշանգղներին՝ զոհելով իրենց կյանքը։ Հրետանավորները մարտական իրադրության ճգնաժամային պահերին իրենց վրա էին ընդունում կրակը, հետևակայինները գնդակների կապարե կարկուտը կասեցնելու համար իրենց մարմնով փակում էին թշնամու հրակնատները։

«Ռուսաստանը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ընդունակ է տալու ոչ միայն միայնակ հերոսներ... Ռուսաստանը կկարողանա առաջ քաշել այդ հերոսներին հարյուրներով, հազարներով» (ԵԼԺ, հ. 42, էջ 5)։ Այդ խոսքերի ապացույցը եղավ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը։ Հայրենիքը բարձր գնահատեց իր զավակների կատարած սխրանքները։ 11 հազար 600 մարդ արժանացավ Սովետական Միության հերոսի բարձր կոչման։ Ոսկե աստղի ասպետներից 102-ը հայորդիներ են։ Իսկ Սովետական Միության մարշալ Հ. Ք. Բաղրամյանը և օդաչու Նելսոն Ստեփանյանն իրենց պսակեցին կրկնակի հերոսի փառքով։ Ալեքսանդր Մատրոսովի սխրանքը կրկնած 184 ռազմիկներից մեկը հայորդի Հունան Ավետիսյանն էր, որի անունն են կրում ծովային մի փոխադրամիջոց և Նովոռոսիյսկի սահմանապահ ուղեկալներից մեկը։

Հանրապետության բոլոր քաղաքներում ու գյուղերում խորապես հարգում են իրենց կյանքը սովետական հայրենիքի ազատությանն ու անկախությանը նվիրաբերած ռազմիկ դյուցազունների հիշատակը։ Նրանց անմար սխրանքների պատվին կանգնեցվել են շուրջ 300 հուշարձան ու հուշակոթող, ստեղծվել մարտական և աշխատանքային փառքի 142 թանգարան և ավելի քան 1.700 անկյուն։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ հերոսական ավանդույթներով երիտասարդությանը դաստիարակելու ասպարեզում մեծ աշխատանք են կատարում ուսումնական հաստատությունների մանկավարժական կոլեկտիվները, ԴՕՍԱԱՖ-ը, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները։ Բազմաթիվ ուսումնական հաստատությունների կուսակցական և կոմերիտական կազմակերպություններ սովետական բանակի մարտական ավանդույթներին պատանիներին հաղորդակից են դարձնում դեռևս դպրոցում՝ պիոներական տողան կազմելիս, ռազմասպորտային խաղերին նրանց մասնակից դարձնելով, զորամասերի հետ շեֆական կապեր հաստատելով։ Այդ կապերից է ծնվել և լայնորեն տարածվել հայրենասիրական դաստիարակության ձևերից մեկը՝ հայրենիքի, սովետական զինված ուժերի հերոսական անցյալով երիտասարդ սերնդի դաստիարակումը։

Հանրակրթական դպրոցների և զինվորական կոլեկտիվների փոխադարձ կապերը դաստիարակչական մեծ նշանակություն ունեն։ Դրանք պատանիներին և աղջիկներին տոգորում են ավագ սերնդի հեղափոխական և մարտական ավանդույթներն արժանավայել շարունակելու ցանկությամբ, նրանց օգնում մասնագիտության ընտրության, ակտիվ կենսադիրքորոշման գործում։

Ապագա ռազմիկի համալսարանները, բաց դռների օրերը, «Զառնիցա» և «Օռլյոնոկ» ռազմասպորտային խաղերը, ինտերնացիոնալ բարեկամության երեկոներն ու ցերեկույթները երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության առավել տարածված ձևերից են։ Լենինականի սպայի տանն առընթեր մշտապես գործում են ապագա ռազմիկի դասախոսարաններ և համալսարաններ։ Այստեղ զորակոչային և նախազորակոչային հասակի երիտասարդության համար կարդացվում են դասախոսություններ և զեկուցումներ, անցկացվում Հայրենական մեծ պատերազմի և զինված ուժերի վետերանների,





digitised by A.R.A.R.@

բարձրակարգ մասնագետների, մարտական և քաղաքական պատրաստության գերազանցիկների հետ հանդիպումներ, որոնք մեծապես նպաստում են աճող սերնդի դաստիարակությանը կուսակցության և ժողովրդի հերոսական ավանդույթներով:

Հեղափոխական և մարտական ավանդույթների պրոպագանդման նպատակամղված և ներգործուն կերպով է անցկացնում Կիրովականի № 11 դպրոցի մանկավարժական կոլեկտիվը: Այստեղ պարբերաբար կազմակերպվում են լենինյան ընթերցումներ, սովետական զինված ուժերի նշանակալի տարելիցներին նվիրված թեմատիկ երեկոներ ու ցերեկույթներ, ռազմահայրենասիրական թեմայով վիկտորինաներ, հանդիպումներ Սովետական Միության հերոսների, Հայրենական մեծ պատերազմի վետերանների, հանրապետության անվանի մարդկանց հետ: Շատ տպավորիչ էր հանդիպումը Սամարա—Ուլյանովսկյան, Բերդիչևյան եռակի կարմրադրոշ, Սուվորովի և Բոգդան Խմելնիցկու շքանշանակիր մոտոհրաձգային երկաթե դիվիզիայի ռազմիկների հետ, որի կազմակերպիչն ու առաջին պետն է եղել քաղաքացիական պատերազմի լեգենդար հերոս Գայը (Հայկ Բժշկյանց): Ի հիշատակ այդ հանդիպման, դիվիզիայի հրամանատարը դպրոցին նվիրեց «Հարատևում են ավանդույթները մարտական» գիրքը, որը պատմում է այդ փառապանծ զորամիավորման անցած մարտական ուղու մասին:

Դպրոցականներն ակտիվորեն մասնակցում են դեպի հեղափոխական, աշխատանքային և մարտական փառքի վայրերը ձեռնարկվող արշավներին՝ հարստացնելով իրենց գիտելիքներն ավագ սերնդի մարտական ու աշխատանքային մեծագործությունների վերաբերյալ նյութերով, սեփական աչքով տեսնելով, թե որքան լայնարձակ ու հարուստ է մեր երկիրը:

Արշավի ելնելով «Իմ հայրենիքը ՍՍՀՄ-ն է» նշանաբանով՝ դպրոցի մի խումբ սովորողներ այցելել են մեծ Հայրենականի հիշարժան մարտավայրերը, եղել Դրոգոբիչ և Բորիսլավ քաղաքների ձեռնարկություններում, հանդիպումներ ունեցել պատերազմի ու հեղափոխության վետերանների, արտադրության առաջավորների հետ: Սխոդնիցա գյուղում (Դրոգոբիչի մարզ) նրանք փնտրել, գտել են երեք հեղափոխությունների մասնակից Ժուրավլյովին, որը, սիրալիր ընդունելով դպրոցականներին և նրանց շնորհակալություն հայտնելով ցուցաբերած հետաքրքրության համար, պատմել է լենինյան «Իսկրա» թերթը Լեհաստանով անլեգալ Ռուսաստան տեղափոխելուն, ցարիզմի դեմ պայքարին իր ունեցած մասնակցության մասին: Նա մեծ ջերմությամբ հուշեր է պատմել հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինի հետ իր անմոռաց հանդիպման մասին:

Դրոգոբիչում հայ պատանիներն ու աղջիկները այցելել են № 8 դպրոցը, որտեղ պատերազմի տարիներին գտնվելիս է եղել գեներալ-գնդապետ (հետագայում Սովետական Միության մարշալ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր) Ա. Գրեչկոյի գլխավորած առաջին գվարդիական բանակի շտաբը: Բանակի վետերան, պահեստի փոխգնդապետ Ն. Օնիշչենկոն արշավի մասնակիցներին պատմել է քաղաքն ազատագրելիս ռազմիկների գործած մարտական սխրանքների մասին: Հետաքրքրական է եղել հանդիպումը պատերազմի վետերան, Սովետական Միության հերոս, լեգենդար հետախույզ Նիկոլայ Կուզնեցովի զինակից և մարտական բարեկամ Ի. Շևչուկի հետ, որը հուշեր է պատմել Կուզնեցովի հերոսական սխրանքների, հանդուգն ու համարձակ ձեռնարկումների, նրա հայրենասիրության ու նվիրվածության մասին: Խատինի հուշահամալիր, Բրեստի ամրոց, Լվովի փառքի բլուր այցելելը, դեպի Վ. Ի. Լենինի դամբարան, Կարմիր հրապարակ, Անհայտ զինվորի գերեզմանը, Հայաստանի պատմական հուշարձանները էքսկուրսիաներ կատարելը, հայրենիքի համար մարտերում զոհված ռազմիկների հուշարձանի մոտ պատվո պահակ կանգնելը «Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել» պատվիրանին հավատարիմ լինելու կոնկրետ արտահայտությունն են:

Լավ կազմակերպված, արդյունավետ ռազմահայրենասիրական աշխատանքի, կուսակցության և ժողովրդի հերոսական ավանդույթների լայն պրո-



պագանդման համար Կիրովականի № 11 դպրոցը պարգևատրվել է պատերազմի վետերանների քաղաքային կոմիտեի պատվոգրով և հուշադրոշով:

Աշակերտության նպատակամղված ռազմահայրենասիրական դաստիարակությունը, որպես կանոն, լավ արդյունքներ է տալիս: Այդ դպրոցի 50-ից ավելի շրջանավարտներ սովետական զինված ուժերի սպաներ են, 20-ը սովորում են բարձրագույն զինվորական ուսումնական հաստատություններում: Սպաներ են դարձել և հիանալի են իրենց ռազմական ծառայությունը կատարում կործանիչ օդաչու Վ. Հարությունյանը, ավագ օդաչու Ս. Հակոբյանը, կապավոր եղբայրներ Ա. և Ս. Սուխովները, տանկիստ Ս. Բուլավինը, հրետանավոր Ս. Ղուկասյանը, քաղաշխատող Ա. Աբրահամյանը, սուզանավորդ Տ. Քառյանը և շատ ուրիշներ:

Սովետական զինված ուժերի նկատմամբ երեխաներին մեծ սիրով համակելու նպատակով դպրոցի մանկավարժական կոլեկտիվը նամակագրական կապեր է պահպանում ոչ միայն բանակում ծառայող իր շրջանավարտների, այլև նրանց հրամանատարների հետ: Այսպես, N զորամասի հրամանատարը դպրոցի շրջանավարտ Վ. Սիմոնյանի մասին գրած նամակում առանձնակի հպարտությամբ պատմել է, թե նա որքա՜ն արագորեն է տիրապետել ռազմական մասնագիտությանը, դարձել տանկի մեխանիկ-վարորդ, մարտական ու քաղաքական պատրաստության գերազանցիկ, աչքի ընկել տակտիկական զորավարժություններում, իրեն դրսևորել որպես աշխատասեր ու կարգապահ: Դպրոցի զինղեկի նախաձեռնությամբ այդ նամակը հրապարակվեց քաղաքային «Կայծ» թերթում և լայն արձագանք գտավ:

Շատ դպրոցներ մարտական փառքի իրենց թանգարանները համալրում են խիստ ուշագրավ, երբեմն էլ եզակի ցուցանմուշներով, որոնք դաստիարակչական մեծ նշանակություն ունեն: Այսպես, Երևանի Շևչենկոյի անվան № 42 դպրոցի պատանի հայրենասերները եղել են Սովետական Միության կրկնակի հերոս, մարշալ Հ. Ք. Բաղրամյանի կյանքի հետ կապված մի շարք վայրերում, հանդիպել փառաբանված զորավարի հետ, ձայնագրել նրա զրույցը: Մարշալը երեխաներին ոչ միայն պատմել է իր անցած մարտական ուղու մասին, այլև խորհուրդներ տվել կյանքի ճանապարհ ընտրելու վերաբերյալ, պարզաբանել, թե ինչ է նշանակում լինել հայրենասեր, որքան անհրաժեշտ է պատրաստ լինել հայրենիքի պաշտպանությանը:

Մարտական փառքի դպրոցական շատ թանգարաններ ու սենյակներ դարձել են ռազմահայրենասիրական դաստիարակության իսկական կենտրոններ: Այսպես, Երևանի Հովհ. Թումանյանի անվան № 32 դպրոցի թանգարանում անցկացվել են «Դու ծնվել ես ալ դրոշի ներքո...», «Օրինակ վերցրու հերոսից», «Մարտական փառքն անմար է, ավանդույթները՝ հարատև» թեմատիկ երեկոներ՝ նվիրված Կիրովոգրադյան—Բրատիսլավյան 409-րդ հայկական հրաձգային դիվիզիայի ռազմիկների հերոսական սխրանքներին, սովետական զինված ուժերի մարտական ավանդույթներին: Երեխաները միաժամանակ հանդիպում են ունեցել այդ միավորման նախկին հրամանատար, գնդապետ Վասիլյանի կնոջ ու դստեր հետ:

Դպրոցականների վրա անմոռանալի տպավորություն է թողել գվարդիայի շարքային Ա. Հակոբյանի հետ հանդիպումը: Դպրոցի նախկին շրջանավարտը առանձնապես շեշտել է, որ տարրական ռազմական պատրաստության դասերին և ռազմահայրենասիրական դաստիարակության միջոցառումների ժամանակ ձեռք բերած գիտելիքները օգտակար են եղել սովետական բանակի շարքերում ծառայելու առաջին իսկ օրերից: «Ես իմ խորին երախտագիտությունն եմ հայտնում,— ասել է նա,— ամբողջ մանկավարժական կոլեկտիվին և առաջին հերթին մեր զինղեկին՝ Սովետական Միության հերոս Ա. Մանուկյանին, որոնց խորհուրդներն ու խրատները շատ պիտանի եղան ինձ՝ որպես հայրենիքի պաշտպան զինվորի»:

ՄԻՋՆԱԿԱՐԳ ՀԱՆՐԱԿՐԹԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ զինղեկներից և արտադասարանային, արտադպրոցական աշխատանքի կազմակերպիչներից ոմանք ենթադրում են, թե ռազմահայրենասիրական դաստիարակության աշխատանքը կա-



digitised by A.R.A.R.@

րելի է հետաքրքիր և բովանդակալից կազմակերպել միայն քաղաքի պայմաններում, որտեղ կան թանգարաններ, պատկերասրահներ, այլ տեսարժան վայրեր, որտեղ միշտ հնարավոր է հանդիպումներ կազմակերպել պատերազմի վետերանների, գիտության և մշակույթի գործիչների հետ, և տրտնջում են, թե հեռավոր գյուղում առանձնապես շատ բան չես անի։ Այդպիսի կարծիքի հանգել՝ նշանակում է կազմալուծել գյուղական վայրում սովորող աշակերտության ռազմահայրենասիրական դաստիարակությունը։ Բայց, ինչպես ցույց է տալիս գյուղական առանձին դպրոցների աշխատանքի փորձը, ծայրամասում նույնպես կարելի է լավ աշխատանք ծավալել կուսակցության և ժողովրդի հերոսական ավանդույթներով երիտասարդությանը դաստիարակելու համար։ Ով առիթ է ունեցել լինելու Իջևանի շրջանի դպրոցներում, գուցեև այցելած լինի Սարիգյուղի միջնակարգ դպրոց, որը, հեռու լեռներում գտնվելով հանդերձ, ժողկրթբաժնի աշխատողների ուշադրությունն է միշտ գրավել ամուր հիմքերի վրա դրած իր ռազմահայրենասիրական աշխատանքով։ Այդ բանում մեծ ծառայություն ունի Հայրենական պատերազմի վետերան, պաշտոնաթող սպա Գ. Ամիրխանյանը։ Նրան հարկ է եղել տառացիորեն բեկոր առ բեկոր նյութեր հավաքել գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում համագյուղացիների ցուցաբերած անձնազոհության, հերոսական սխրանքների մասին։ Գյուղից պատերազմ մեկնած 214 մարդուց 103-ը այդպես էլ տուն չվերադարձան։ Նրանց լուսանկարները, նամակները, կարմիր բանակի գերագույն գլխավոր հրամանատարության շնորհակալագրերը, ճակատային թերթերը հիմք հանդիսացան դպրոցում մարտական փառքի թանգարան ստեղծելու համար։ Պատերազմի վետերանները Գ. Ամիրխանյանի հրավերով լինում են դպրոցում, աշակերտներին պատմում ավագ սերնդի հերոսական անցյալի մասին։

Վարդենիսի շրջանի Ակունքի, Մարտունու շրջանի Արծվանիստի, Ապարան ավանի № 1 դպրոցներում (զինղեկներ՝ Օ. Սիմոնյան, Բ. Նավոյան, Ս. Բեյբության) տարվող ռազմահայրենասիրական դաստիարակության աշխատանքին ծանոթանալիս պարզվեց, որ այդտեղ նախատեսված շատ միջոցառումներ ընդհանուր բնույթ են կրում։ Այդ դպրոցներում աշակերտության ռազմահայրենասիրական դաստիարակությանը գրեթե մասնակից չեն դարձվում գրադարանավարները, ֆիզկուլտուրայի, պատմության, ռուսաց լեզվի և գրականության ուսուցիչները։ Այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են թեմատիկ երեկոներն ու ընթերցողների կոնֆերանսները, վիկտորինաները, ռազմահայրենասիրական թեմայով ոտանավորների, պատմվածքների, երգերի լավագույն կատարման մրցույթները, կոլեկտիվ կինոդիտումները և քննարկումները դպրոցական պլաններում գրեթե չեն հիշատակվում։ Նախատեսվող միջոցառումները միօրինակ են, ուստի և հետաքրքրական չեն ու բոլորովին չեն համապատասխանում ռազմահայրենասիրական դաստիարակությանը ներկայացվող արդի պահանջներին։

Յուրաքանչյուր գործում, իսկ ռազմահայրենասիրական դաստիարակության բնագավառում առանձնապես անթույլատրելի է կամպանիոն մոտեցումը։ Ինչի՞ նման է, երբ ռազմահայրենասիրական բնույթի միջոցառումներ են անցկացվում միայն հոբելյանական և տոն օրերին։ Նշում են տարելիցը, և հերոսական ավանդույթների պրոպագանդումը դրանով ավարտվում է։ Դաստիարակչական աշխատանքում այդպիսի մակընթացությունները և տեղատվությունները բացասաբար են ազդում նաև ուսումնական պրոցեսի վրա, երբ այս կամ այն միջոցառումն անցկացնելու համար աշակերտներին մի քանի օր իրար ետևից կտրում են դասերից։

Կուսակցության և ժողովրդի հերոսական ավանդույթներով երիտասարդ սերնդի դաստիարակությունը պետական կարևորություն ունեցող գործ է։ Կուսակցական, հասարակական կազմակերպությունների, ժողովրդական կրթության մարմինների խնդիրն է հանրակրթական դպրոցները դարձնել ռազմահայրենասիրական դաստիարակության կենտրոններ, որտեղ հայրենիքի ապագա պաշտպաններից յուրաքանչյուրը, ուսումնական ծրագիրը յուրացնելուց բացի, ռազմահայրենասիրական դաստիարակության լավ դպրոց անցնի։



# ԿՈՄՈՒՆԱՅԻ ԲԱՆՎՈՐ — ԺՈՂԿՈՄԸ

## (Ի. Տ. ՖԻՈԼԵՏՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր**

ԻՎԱՆ ՏԻՄՈՖԵԵՎԻՉ ՖԻՈԼԵՏՈՎԸ բանվոր դասակարգի ծոցից ելած այն անձնուրաց գործիչներից էր, որոնք, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «... իրենց ամբողջապես նվիրել են բանվոր դասակարգի ազատագրության համար մղվող պայքարին. Դրանք այն մարդիկ են, ...որոնք համառորեն, անշեղորեն գործել են պրոլետարական մասսաների մեջ, օգնելով **նրանց** գիտակցության, **նրանց** կազմակերպության, **նրանց** հեղափոխական ինքնագործունեության զարգացմանը» (**ԵԼԺ**, հ. 20, էջ 99)։

Ֆիոլետովը Բաքվի կոմունայի ամենասիրված ղեկավարներից էր, նրա «բանվոր-ժողկոմը», մեկը 26 դյուցազուններից, ովքեր մինչև կյանքի վերջին պահը հավատարիմ մնացին ժողովրդին ծառայելու վեհ գաղափարին՝ հետագա սերունդներին ավանդ թողնելով սերը դեպի սոցիալիստական հայրենիքը, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։

Նա ապրեց ընդամենը 34 տարի, որից 17-ը՝ որպես պրոֆեսիոնալ հեղափոխական։ Հին աշխարհի դեմ հեղափոխական գոտեմարտի ելած նոր սերնդի հետ ըմբռնեց ու մինչև վերջ հասկացավ սոցիալական վերափոխումների համար մղվող պայքարի իմաստը, հասավ այն ճշմարտությանը, որն անխախտ կանխորոշեց նրա կյանքի ամբողջ ուղին։ Այդ ճշմարտությունը մարքս-լենինյան հզոր ուսմունքն էր, հանձին որի միջազգային բանվորական շարժումը ձեռք բերեց հզոր տեսական զենք, բազմակողմանիորեն մշակված գաղափարախոսություն և հեղափոխական գործունեության ծրագիր։

Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը ստեղծվեց ու զարգացավ որպես պրոլետարական-ինտերնացիոնալիստների կուսակցություն, Ռուսաստանում բնակվող բոլոր ժողովուրդների բանվոր դասակարգի կուսակցություն։ Առաջավոր մարդիկ ամենուր համախմբվում էին լենինիզմի դրոշի ներքո, լենինյան ուսմունքը ձեռք էր բերում նորանոր հետևորդներ։ Դրա վառ օրինակը Անդրկովկասն էր՝ ցարական Ռուսաստանի բազմազգ ծայրամասը։ Այստեղ աճեց ու հասակ առավ հեղափոխական գործիչների մի ամբողջ սերունդ, որը գլխավորեց երկրամասի ժողովուրդների պայքարը հանուն ազգային ու





digitised by A.R.A.R.@

սոցիալական ազատության, Անդրկովկասի և համայն Ռուսիայի աշխատավորության պայքարի միասնության:

Հեղափոխական դարաշրջանը ոգեշնչեց նրանց, ընդմիշտ կապելով բանվոր դասակարգի, բոլշևիկյան կուսակցության և նրա առաջնորդ Լենինի հետ: Զինվորագրվելով Լենինի մեծ գործին, ընդգրկվելով պատմական իրադարձությունների հորձանուտի մեջ՝ նրանք հասարակության զարգացման ամբողջ ընթացքով առաջ մղվեցին քաղաքական ավանգարդ, ակտիվորեն ներգործելով պատմության ընթացքի վրա:

Բոցաշունչ հեղափոխականների այդ սերնդից էր նաև Ֆիոլետովը, որը բոլշևիկյան կուսակցության ստեղծման արշալույսին, արձագանքելով «տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը» լենինյան կոչին (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 6, էջ 161), զինվորագրվեց բանվոր դասակարգի ազատագրման վեհ գործին:

Ֆիոլետովի համար հեղափոխական գործը արհեստ չէր, այլ կոչում, ներքին մղում, անձը ժողովրդին անմնացորդ նվիրաբերելու միջոց: Նա մաքառում էր հանուն աշխատավոր մարդու երջանկության, հանուն նրա ազատության, խղճի ու համոզմունքի անաղարտության, մտքի ու սրտի վսեմ խոյացումների:

Ի. Ֆիոլետովը ծնվել է 1883 թ. դեկտեմբերի 6(19)-ին, Տամբովի նահանգի Բորիսոգլեբսկի գավառի Տուգոլուկովո գյուղում: Նոր էր բոլորել նրա հինգ տարին, երբ ծնողները, աշխատանք գտնելու հույսով, տեղափոխվեցին Բաքու: Այնտեղ էլ, նավթահանքերում, դեռևս վաղ տարիքում նա զգաց չարքաշ կյանքի դառնությունը, սոցիալական անհավասարությունն ու զրկանքը, աղայական ու ոստիկանական հալածանքը: Բալախանիում Վանյան դարձավ փականագործ, անցավ դասակարգային պայքարի դպրոց: Տասնյոթ տարեկան հասակում մտնելով ՌՍԴԲԿ շարքերը՝ նա խիզախորեն նետվեց Բաքվի բազմազգ պրոլետարիատի դասակարգային պայքարի հորձանուտը, մեծ աշխատանք տանելով հատկապես Բալախանիի բանվորների շրջանում լենինյան «Իսկրա»-ի պրոպագանդման և տարածման գործում:

Հայտնի է, որ առաջին համառուսաստանյան մարքսիստական լրագիրը՝ «Իսկրա»-ն, արտատպվում էր Բաքվում՝ Վ. Կեցխովելու, Ա. Ենուկիձեի, Լ. Գալպերինի ստեղծած «Նինա» տպարանում: Ծփվելով ականավոր սոցիալ-դեմոկրատ ինտերնացիոնալիստների, այդ թվում և Բաքու աքսորված Բոգդան Կնունյանցի հետ՝ Ֆիոլետովը շուտով դարձավ լենինյան իսկրայական ուղղության Բաքվի կուսակցական կազմակերպության ակտիվիստներից մեկը, ներգրավվեց բանվոր դասակարգի քաղաքական և տնտեսական պայքարի ղեկավարման մեջ, իր աննկուն աշխատանքով նպաստեց բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնության ամրապնդմանը, սոցիալիզմը բանվորական լայն շարժման հետ միացնելուն:

1902 թվականի մայիսի 1-ին Ֆիոլետովը քաղաքական ազատության և ինքնակալության տապալման նշանաբանով փողոց դուրս եկած Բաքվի պրոլետարիատի շարքերում էր, իսկ հաջորդ տարվա մարտի 2-ին ակտիվորեն մասնակցեց հակապետական հզոր ցույցերին: Մասսաների կազմակերպչի, պրոպագանդիստի, ագիտատորի նրա տաղանդն առանձնակի ուժով փայլատակեց 1903 թ. հուլիսյան գործադուլի ժամանակ, որին մասնակցեց 40 հազար բանվոր: Բաքվեցիների ելույթը լայն արձագանք գտավ Անդրկովկասում և Ռուսաստանի հարավում, արժանացավ Լենինի բարձր գնահատականին:

Կուսակցության II համագումարից հետո, 1904 թ. ամռանը, երիտասարդ Ֆիոլետովը հսկայական դեր խաղաց Բաքվի կոմիտեն հիրավի բոլշևիկյան կենտրոնի վերածելու և մենշևիկներին այնտեղից դուրս մղելու գործում: Նա պարզ, հասկանալի, անպաճույճ խոսքերով ու փաստերով ռուս, հայ, վրացի, ադրբեջանցի բանվորների գիտակցությանն էր հասցնում այն ճշմարտությունը, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմը բոլոր ազգերի պրոլետարների շահերի ընդհանրությունն ու նպատակների միասնությունն արտահայտող գաղափարախոսություն է, որ պրոլետարիատի կուսակցության քաղաքականությունն ուղղված է բոլոր ազգերի բանվորների եղբայրական միավորմանը՝ անկախ ռասայական և ազգային պատկանելությունից:

Բանվորների շահերի միասնությունը ավելի ցայտուն դրսևորվեց Բաքվի 1904 թ. համընդհանուր գործադուլի ժամանակ: Դեկտեմբերի 13-ին Բալախանիում, Կասպիական—սևծովյան նավթային արդյունաբերության ընկերության գործարանում (որտեղ որպես փականագործ աշխատում էր Ֆիոլետովը) բռնկված գործադուլը ռուսաստանյան առաջին հեղափոխության նախօրյակին բանվոր դասակարգի ուժերի փայլուն ստուգատեսն էր: Առաջին իսկ օրից գործադուլն անցավ ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի ղեկավարությամբ: Գործադուլային կոմիտեն, որտեղ ակտիվ դեր էին խաղում Ի. Ֆիոլետովը, Ա. Ջափարիձեն, Ա. Ստոպանին, մյուս բոլշևիկների՝ Ա. Բեկզադյանի, Մ. Մամեդյարովի, Ս. Էֆենդիևի և այլոց օգնությամբ, նավթաշխարհի պրոլետարիատին ոտքի հանեց գլխավոր թշնամու՝ ցարական ինքնակալության, անհավասարության, ճնշման ու հալածանքի դեմ, համախմբեց նրանց սոցիալիզմի կարմիր դրոշի ներքո.

ՌՍԴԲԿ քաղաքային կոմիտեն մշակեց «Բաքու քաղաքի կազմակերպված բանվորների ընդհանուր պահանջները», որը որպես թռուցիկ հրատարակվեց դեկտեմբերի 15-ին: Այդ կարևոր փաստաթղթի ակտիվ մշակողներից էր Ֆիոլետովը, որը հանդես էր գալիս նաև քաղաքական պահանջների առաջարկով:

Բաքվի համընդհանուր գործադուլն ավարտվեց բանվորների հաղթանակով: Դեկտեմբերի 30-ին, Ռուսաստանի պրոլետարիատի ազատագրական պայքարի պատմության մեջ առաջին անգամ, բանվորների և գործարանատերերի միջև կնքվեց կոլեկտիվ պայմանագիր: Դա բազմազգ պրոլետարիատի համերաշխության հաղթանակն էր, լենինյան կուսակցության ազգային քաղաքականության հաղթանակը:

Ֆիոլետովի և մյուս երիտասարդ մարքսիստների համար ինտերնացիոնալ կոփման հիանալի դպրոց էր ռուսական առաջին հեղափոխությունը: Այդ ժամանակաշրջանի իրադարձություններն ազգային և միջազգային իմաստով ապացուցեցին պրոլետարիատի համերաշխության անհրաժեշտության վերաբերյալ մարքս-լենինյան դրույթի ճշմարտացիությունը: Անդրկովկասի և նրա պրոլետարական կենտրոնի բոլշևիկները պաշտպանում էին մարքսիստական կուսակցության ծրագրային, կազմակերպական և տեսական հիմքերը, պայքարում հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոն դերի, բանվորների և գյուղացիների դաշինքի, երկրամասի աշխատավորների և համայն Ռուսիայի հեղափոխական ուժերի միավորման համար:

Որպես ՌՍԴԲԿ Բաքվի և Կովկասյան միութենական կոմիտեի գործակալ՝ Ֆիոլետովը մեծ դեր խաղաց Բաքվի և Հյուսիսային Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների կապի ամրապնդման, կուսակցության Գրոզնու կոմիտեի հիմնադրման, Թերեքի երկրամասի ռուս, հայ, վրացի աշխատավորության շրջանում մայրենի լեզվով բոլշևիկյան գրականության տարածման գործում: Այդ մասին պերճախոս վկայում են Թերեքի մարզային ժանդարմական վարչության զեկուցագրերը՝ ուղղված Կովկասի ոստիկանության պետին. «Մարզում բացի տեղականից, տարբեր ժամանակներ տարածվել են և այլ կոմիտեների ու խմբերի ընդհատակյա հրատարակություններ, նույնիսկ արտասահմանում հրատարակված, որոնք ուղարկվում են այստեղ իրենց գործակալների միջոցով: Ընթացիկ տարվա սկզբից ավելի հաճախ է նկատվում «Բաքվի կոմիտեի» և «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության Կովկասյան միության» թռուցիկների տարածումը՝ ռուսերեն, հայերեն և վրացերեն լեզուներով: Գործակալ-միջնորդներ են մայիսի 2-ին Գրոզնի քաղաքում բանտարկված երկու բանվորներ՝ Բիրյուկովը և Ֆիոլետովը, որոնց մոտ հայտնաբերվել է 800 օրինակ անլեգալ գրականություն: Նրանց բանտարկությունից հետո այլ քաղաքներից եկող նման հրատարակությունների հոսքը զգալիորեն կրճատվել է»:

Ազատվելով ոստիկանական զնդանից՝ Ֆիոլետովը վերադարձավ Բաքու: Անխափան կապը աշխատավոր ժողովրդի հետ, դասակարգային պայքարի բոցերում կոփված կամքը, բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի ղեկավարման պրակտիկ հարուստ փորձը Ֆիոլետովին առաջ մղեցին Բաքվի պրոլետարիատի ճանաչված, հարգված և սիրված, հեղինակություն ու վստահություն վայելող ղեկավարների շարքը: 1905 թ. նոյեմբերի 25-ին Ֆիոլետովն ընտրվեց Բաքվի առաջին սովետի անդամ, Ա. Ջափարիձեի, Մ. Մամեդյարովի, Ա. Բեկզադյանի, Պ. Մոնտինի, Մ. Կասումովի, Գ. Ռտվելաձեի, Կ. Աղասինի, Ա. Զարգարովի և այլոց հետ մտավ բոլշևիկների ամրակուռ ֆրակցիայի մեջ:

Ուժեր կենտրոնացնելով Բալախանիում և Բիբի-Էյբաթում, պրոլետարական խոշոր կենտրոններում, բոլշևիկները պայքար ծավալեցին մասսաների հեղափոխական մոբիլիզացման, բանվոր դասակարգի համառուսաստանյան պայքարի հետ կապն ուժեղացնելու, արհմիություններ ստեղծելու և նրանցում կուսակցության ղեկավարությունն ապահովելու համար: Մենշևիկների, դաշնակների, պանիսլամիստների պառակտիչ գործողությունների դեմ մղված կատաղի պայքարում հաղթեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները: Ֆիոլետովի և Սուլթանովի ջանքերով 1906 թ. սեպտեմբերի 24-ին Բաքվի «Մոսկովյան—կովկասյան ընկերությունում» ստեղծվեց նավթարդյունաբերության բանվորների առաջին արհմիությունը, որը փաստորեն վերածվեց բոլշևիկների լեգալ գործունեության կարևոր օղակի, ռեակցիայի տարիներին դարձավ նրանց հենակետը:

Ստոլիպինյան դաժան ռեակցիայի տարիներին, ցարիզմի ուժեղացող հետապնդումների պայմաններում, Ֆիոլետովը, որպես Բաքվի կազմակերպության մարտական ղեկավարնե-





digitised by A.R.A.R.@

րից մեկը, հմտորեն զուգակցում էր լեգալ և անլեգալ աշխատանքը, աչքի ընկնող դեր կատարում նավթարդյունաբերության բանվորների միությունում, ակտիվորեն մասնակցում բանվորական մասսաների նվաճման՝ նրանց հեղափոխական նոր գործողությունների նախապատրաստման համար մղվող պայքարում:

Ֆիոլետովը 1906—1907 թթ. «Բակինսկի ռաբոչի» և «Բակինսկի պրոլետարի» թերթերի խմբագրական կոլեգիայի անդամ էր, սերտ կապերի մեջ էր Ս. Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Բ. Կնունյանցի, Մ. Ազիզբեկովի, Ս. Էֆենդիևի, Ա. Ստոպանիի, Մ. Ֆրումկինի, Վ. Եֆիմովի հետ: Մինչ «Գուդոկի» մենշևիկ-լիկվիդատորների ձեռքն անցնելը, Ֆիոլետովն աշխատակցում էր նաև այդ թերթին:

Ցարական ոստիկանությունը 1908 թ. փետրվարին կրկին բանտարկեց Ֆիոլետովին: Նրա մոտ հայտնաբերված գրականության մեջ էին Վ. Ի. Լենինի «Բանվորական կուսակցության ագրարային ծրագրի վերանայումը» գրքույկը, Լենինի կազմակերպած «Վպերյոդ» հրատարակչության հրատարակած «Բարձրագույն տիպի խմբակներում պարապմունքի ծրագիր» և «Ինչպես է ընթանում ագրարային շարժումը Ռուսաստանում» գրքույկները, Բաքվի կոմիտեի հրատարակած մի շարք թռուցիկներ: 1908 թ. հունիսի 27-ին, ինչպես ասված է ոստիկանական փաստաթղթերում, Բալախանիի շրջանային կոմիտեի բոլշևիկյան ֆրակցիայի անդամ, կազմակերպության ականավոր աշխատող Ֆիոլետովը պրոպագանդայով զբաղվող Օլգա Իվանովնա Բաննիկովան (Ֆիոլետովի կինը և մարտական ընկերը) երեք տարով աքսորվեցին Վոլոգդայի նահանգի Յարենսկ քաղաքը:

Աքսորավայրում Ֆիոլետովը հանդիպեց Յակով Դավիդովիչ Զևինի հետ, որը Վոլոգդա էր արտաքսվել կասպիական առևտրական նավատորմի նավաստիների գործադուլի կազմակերպմանը մասնակցելու համար: Այստեղ սկսվեց Բաքվի ապագա կոմունայի կոմիսարների մեծ բարեկամությունը: Նրանք դարձան քաղաքական աքսորականների գաղութի կուսակցական անլեգալ խմբի կազմակերպիչները և գլխավոր ղեկավարները: Խումբը լույս ընծայեց «Յարենսկ քաղաքի քաղաքական աքսորականների գաղութ» տպագիր օրգանի երկու համար:

Աքսորի ժամկետն ավարտվելուց հետո Ֆիոլետովը վերադարձավ Բաքու, սակայն աշխատանք չգտնելու պատճառով շուտով մեկնեց Տաշքենդ, որտեղ ապրեց ընդամենը երկու ամիս:

1912 թ. մարտին նա տեղափոխվեց Չելեկան կղզի, որտեղ որպես մեքենավար աշխատանքի է անցնում «Չարկեն» նավթային ընկերությունում: 1914 թ. մարտին այստեղ ևս ժանդարմական քարտ բացվեց նրա անունով: Թուրքեստանի շրջանային գաղտնի ոստիկանության գործակալության տվյալներից երևում է, որ, գտնվելով հեռավոր Չելեկան կղզում, Ֆիոլետովը սերտ կապերի մեջ էր Բաքվի, Թիֆլիսի, Կենտրոնական Ռուսաստանի մի շարք քաղաքների բոլշևիկների հետ, ստանում էր «Պրոլետարսկայա պրավդա» թերթը, այն տարածում նավթագործների շրջանում: Նա համախմբում է հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կորիզ, որի մեջ էին մտնում բոլշևիկներ Ի. Ռեշետինը, Ն. Աղամալյանցը, Պ. Տիտովը և ուրիշներ: Նույն գաղտնի փաստաթղթերում 1914 թ. մայիսի 3-ին հայտնվում էր, որ ՌՍԴԲԿ անդամ Ի. Ֆիոլետովը «ծառայողների և գիտակից բանվորների շրջանում վայելում է մեծ հարգանք, հատկապես «Չարկեն» ընկերության ծառայողների շրջանում: Նրան ակնհայտ հարգանքով և վստահությամբ են վերաբերվում ոչ միայն ցածրաստիճան ծառայողները, այլև ծառայության աստիճանով ավելի բարձր կանգնածները»:

1914 թ. օգոստոսին վերադառնալով Բաքու՝ Ֆիոլետովը նոր թափով մխրճվեց հեղափոխական շարժման հորձանուտը, նավթաշխարհի բոլշևիկյան կազմակերպության հետ պատերազմի և խաղաղության հարցերում կանգնեց լենինյան դիրքերում:

1915 թվականի սկզբներին, Բաքվի բոլշևիկների անլեգալ ժողովում Ֆիոլետովը Ս. Շահումյանի, Ֆ. Կնյազևի, Ն. Կոլեսնիկովայի, Մ. Վարնիչևի հետ ընտրվում է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի անդամ: Նա Ս. Շահումյանի և Ֆ. Մախարաձեի հետ ներգրավվում է նաև ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոյի ղեկավար կենտրոնի մեջ:

Ֆիոլետովը 1915 թ. հոկտեմբերին Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների՝ Բաքվում անցկացված խորհրդակցության ակտիվ մասնակիցներից էր: Խորհրդակցությունը Ս. Շահումյանի ղեկավարությամբ կարևոր դեր խաղաց Կովկասի առանձնահատուկ պայմաններում բոլշևիկյան կուսակցության ստրատեգիական ու տակտիկական պահանջներն իրականացնելու և երկրամասի հեղափոխական ուժերը մոբիլիզացնելու գործում:

Ֆիոլետովը Ս. Շահումյանի, Ֆ. Մախարաձեի, Ս. Քավթարաձեի, Ն. Ալաջալովայի հետ ընտրվեց ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոյի կազմում: Խորհրդակցության արդյունքների մասին կուսակցության կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ» թերթը գրեց. «Մեզ հաղորդում են, որ Ս.Դ. բոլշևիկները, կովկասյան ինտերնացիոնալիստների՝ ռուսների, վրացիների, հայերի և թաթարների անունից հրապարակել են պատերազմի վերաբերյալ իրենց տեսակետը շարադրող մանիֆեստ: Փաստաթուղթն ամբողջովին կանգնած է ՌՍԴԲԿ Կենտկոմի մանիֆեստի դիրքերի վրա»:

Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո Անդրկովկասում ևս ակտիվացավ կուսակցությունների գործունեությունը: Քաղաքներում, գյուղերում և զորամասերում ստեղծվեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետներ: Մարտի 5—6-ի ընտրություններում պայքարի առաջին գծում գտնվող Իվան Ֆիոլետովը ընտրվեց Բաքվի սովետի և նրա գործադիր կոմիտեի անդամ: Բոլշևիկների պահանջով ապրիլի 20—22-ին անցկացված լրացուցիչ ընտրություններում Բաքվի սովետում ընտրված Ս. Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Մ. Բասինի և մյուս բոլշևիկների հետ Ֆիոլետովը հետևողական և վճռական պայքար էր մղում սովետի էսէռամենշևիկյան մեծամասնության հաշտվողական, ազգայնական կուսակցությունների անջատողական պառակտիչ գործունեության դեմ, իր ելույթներում բանվորներին կոչ էր անում՝ համախմբվել բոլշևիկյան կուսակցության շուրջը:

Վ. Ի. Լենինի «Ապրիլյան թեզիսները» 1917 թ. ապրիլի 22-ին (մայիսի 5-ին) «Բակինսկի ռաբոչի» թերթում տպագրվելուց հետո, Ֆիոլետովը Շահումյանի, Ազիզբեկովի, Նարիմանովի, Ջափարիձեի, Զևինի, Էֆենդիևի և մյուս ականավոր բոլշևիկների հետ գլխավորեց Բաքվի պրոլետարիատի պայքարը բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու լենինյան տեսությունն իրականացնելու համար: Ֆիոլետովի խոհերը, մտորումները, տեսակետները պարզ երևում են նրա օրակարգի գրառումներից. «Բոլշևիկները մի բան են, սովետները՝ այլ», «Խառը հասկացություն՝ բոլշևիկներ և սովետներ», «Կադետները ընկել են սովետներ», «Մուսավաթը տեղ չպետք է ունենա սովետում», «Հումեթի ներկայացուցչությունը մերժվում է, մուսավաթականը՝ առաջ քաշվում»: Այդ գրառումներն արված են այն ժամանակ, երբ Բաքվի բանվորների և զինվորների սովետում ձայների երկու երրորդը պատկանում էր էսէռներին, 56 ձայն ունեին մենշևիկները, 25՝ բոլշևիկները: Նա նկատի ուներ մենշևիկներին, որոնք անցկացրին մի բանաձև, որով անհրաժեշտ էր համարվում «մուսավաթ» կուսակցությունը որպես «բանվորական կուսակցություն» մտցնել Բաքվի սովետի մեջ:

Ֆիոլետովը նավթագործ բանվորների արհմիության վերականգնման համար ակտիվ պայքարողներից էր, նրա անդրանիկ վարչության նախագահը: Այդ միությունը քաղաքի ինը շրջաններում միավորում էր 14.670 բանվոր: Նա կոլեկտիվ պայմանագրի համար մղվող պայքարի առաջին գծում էր, նրա եռանդուն պրոպագանդիստը և կազմակերպիչը: Կոլեկտիվ պայմանագրի կնքման, բանվորների սոցիալական և կենցաղային պայմանների բարելավման կոնկրետ առաջարկներով և զեկուցումներով քանիցս հանդես է եկել Բաքվի սովետի նիստում, ինչպես նաև բոլշևիկների և ինտերնացիոնալիստների միացյալ կոնֆերանսներում, նավթագործ բանվորների արհմիութենական կոնֆերանսում, արդյունաբերողների հետ պայմանագրի մշակման հանձնաժողովի նիստերում: Ֆիոլետովը գտնում էր, որ կոլեկտիվ պայմանագրի կնքման հարցին հեղափոխական լուծում կտրվի միայն այն ժամանակ, երբ ամբողջ իշխանությունը կանցնի սովետներին: Բաքվի բանվորների համընդհանուր գործադուլը, որին մասնակցեց 65 հազար մարդ, ավարտվեց գործադուլավորների հաղթանակով: Հոկտեմբերի 15-ին Ֆիոլետովը, Ջափարիձեն, Բասինը բանվորների անունից ստորագրեցին նախնական կոլեկտիվ պայմանագիր բանվորների և նավթարդյունաբերողների միջև:

Այդ նույն օրը նրանք ընտրվեցին մինչ այդ պրոլետարական մասսաների հուժկու ճնշման տակ հրաժարական տված բանվորների և զինվորների Բաքվի սովետի ժամանակավոր գործադիր կոմիտեի կազմում, որի նախագահ երկու օր առաջ ընտրվել էր Ս. Շահումյանը: Դա Բաքվի բոլշևիկների փայլուն հաղթանակն էր դեպի սոցիալիստական հեղափոխություն տանող ճանապարհին:

Ֆիոլետովը առաջիններից մեկն էր, որ հանդես եկավ մենշևիկներից անջատվելու, Բաքվի և ամբողջ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները միավորելու առաջարկով: Այդ հարցը լուծվեց Կովկասի բոլշևիկների՝ Թիֆլիսում հոկտեմբերի 2—7-ը կայացած առաջին համագումարում, որն ընտրեց երկրային կոմիտե: ՌՍԴԲԿ երկրային կոմիտեի կազմում ընտրվեց և Ֆիոլետովը: Երկրային կոմիտեն (Շահումյան, Ցխակայա, Մախարաձե, Ջափարիձե, Ֆիոլետով, Քավթարաձե, Կասյան, Մռավյան, Օրախելաշվիլի, Ալաջալովա և ուրիշներ) ձեռնամուխ եղավ աշխատավոր զանգվածների ինտերնացիոնալ համախմբան, նրանց լենինյան ծրագրով զինելու աշխատանքներին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղա-





digitised by A.R.A.R.@

փոխության հաղթանակը և հեղափոխությամբ ծնված պրոլետարիատի դիկտատուրան ամենուր ընդունվեցին ցնծությամբ: Սովետական իշխանության հենարանը Անդրկովկասում դարձավ պրոլետարական Բաքուն: Հոկտեմբերի 31-ին Շահումյանի գլխավորած Բաքվի սովետը իրեն հայտարարեց Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության անբաժանելի մասը, Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների խորհուրդը ճանաչեց որպես բանվորների և գյուղացիների միակ իշխանություն:

Բարդ քաղաքական իրադրության պայմաններում, երբ Անդրկովկասում ձևավորվում էին երկու հակադիր ուժերի՝ հեղափոխության և հակահեղափոխության, ճամբարները, Ֆիոլետովը հաստատապես գտավ իր տեղը անկուն լենինյանների շարքերում: Նոր ուժով փայլեց բանվոր-ղեկավարի տաղանդը: Ֆիոլետովը արհմիությունների և ֆաբրիկագործարանային հանձնաժողովների ուժերը հմտորեն ուղղում է կապիտալիստների տնտեսական սաբոտաժի դեմ, Բաքվի նավթահանքերում ու գործարաններում հեղափոխական կարգ ու կանոն մտցնելուն, արդյունաբերության նկատմամբ բանվորական վերահսկողություն հաստատելուն: Բարդ խնդիրների լենինյան ըմբռնմամբ Ֆիոլետովն աչքի ընկավ նաև Պետրոգրադում 1918 թ. հունվարին կայացած արհմիությունների համառուսաստանյան առաջին համագումարում, որտեղ նա գլխավորում էր Բաքվի նավթարդյունաբերության բանվորների 29 հազարանոց արհմիության պատվիրակությունը:

Համառուսաստանյան I համագումարը հայտարարեց արհմիությունների կողմից սովետական իշխանությանը լայնորեն աջակցելու մասին: Այդ նույն ժամանակ Ֆիոլետովն իր օրագրում նշել է. «Ռուսաստանում չեզոքություն լինել չի կարող, և արհմիությունը պաշտպանում է սոցիալիզմի քաղաքականությունը, սովետական իշխանությանը», «Սովետական իշխանությունը անհաղթ է»: «Միայն կույրը չի տեսնում Ռուսաստանի վերակառուցումը սոցիալիստական սկզբունքներով»:

Սոցիալիստական նվաճումների պաշտպանությունը պահանջում էր սովետական զինված ուժեր, որի կազմակերպման գործին Բաքվում ձեռնամուխ եղավ և Ֆիոլետովը՝ Գ. Կորգանովի, Մ. Ազիզբեկովի, Ս. Բոգդանովի, մյուս բոլշևիկների հետ: Բաքվում կարճ ժամանակում ձևավորվեցին կարմիր գվարդիայի ջոկատներ, որոնք իրենց մեջ միավորում էին վեց հազարից ավելի զինվորներ: Հենց նրանք էլ ճնշեցին սովետական իշխանության դեմ մուսավաթականների՝ մարտի 30-ին բարձրացրած խռովությունը:

Ֆիոլետովը մտավ Բաքվի հեղափոխական պաշտպանության կոմիտեի մեջ, գլխավորեց բանվորական ջոկատներից մեկը: Հանդես գալով Բաքվի սովետի արտակարգ նիստում՝ Ֆիոլետովը մերկացրեց մենշևիկների դավաճանական քաղաքականությունը, նրանց սերտ կապը մուսավաթի, դաշնակցության և այլ ազգայնական կուսակցությունների հետ: Նա նշեց, որ հարձակումը Բաքվի սովետական իշխանության դեմ միաժամանակ ոտնձգություն է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հանդեպ Ռուսաստանում:

Մարտ—ապրիլ ամիսներին պրոլետարիատի տարած հաղթանակը հակահեղափոխության միացյալ ուժերի դեմ լայն ճանապարհ բացեց արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումների համար. 1918 թ. ապրիլի 25-ին Բաքվում ստեղծվեց ժողովրդական կոմիսարների խորհուրդ՝ ականավոր լենինյան Ս. Շահումյանի գլխավորությամբ: Իվան Ֆիոլետովը ղեկավարում էր ժողովրդական տնտեսության խորհուրդը:

Բաքվի ժողովրդական տնտեսության խորհրդի նախագահի և կոմիսարի պոստում նոր ուժով փայլատակեց Ֆիոլետովի՝ կայուն հեղափոխականի և կազմակերպչի, բնածին պետական գործչի տաղանդը: Բուրժուազիայի սաբոտաժի, տնտեսական քայքայման, նավթահանքերի փլուզման ծանր պայմաններում, ըստանալով բանվոր դասակարգի աջակցությունը, նա հսկայական ջանքեր գործադրեց նավթային արդյունաբերության և կասպիական առևտրական նավատորմի աշխատանքն ապահովելու, հասարակական արտադրության զարգացման, պետական կարգապահության ամրապնդման, բանվորների աշխատավարձը մինչև Պետրոգրադի բանվորների աշխատավարձի մակարդակը բարձրացնելու, ընդերքի, նավթարդյունաբերության և կասպիական առևտրական նավատորմի ազգայնացման, սովետական իշխանության տնտեսական քաղաքականության իրականացման համար:

Ֆիոլետովը կազմակերպեց նավթի անխափան առաքումը Սովետական Ռուսաստան, որի շահերը, ինչպես նշում էր նա, սերտորեն շաղկապված են ողջ հեղափոխական դեմոկրատիայի, մասնավորապես Բաքվի բանվոր դասակարգի շահերի հետ: Սովետական Ռուսաստան ուղարկվեց 86 միլիոն փութ նավթ, Սովետական Ռուսաստանի ժողովրդական կոմիսարների խորհուրդը, իր հերթին, մայիսի 27-ին Վ. Ի. Լենինի ստորագրությամբ որոշում ընդունեց պետական բյուջեից 100 միլիոն



ռուբլի Բաքվի նավթարդյունաբերության կարիքների և բանվորների աշխատավարձի բարձրացման համար հատկացնելու մասին:

Բաքվի ժողովրդական կոմիսարների խորհուրդը սոցիալիստական վերակառուցման աշխատանքներն իրականացնում էր ծանր պայմաններում: 1918 թ. ամռանը սովետական Բաքուն շրջապատված էր թշնամական ուժերի սեղմ օղակով: Մի կողմից սպառնում էին թուրքական օկուպանտները, որոնց ամեն տեսակ օգնություն էին ցույց տալիս մուսավաթական բանդաները, մյուս կողմից՝ անգլիական զավթիչները, որոնց մուտքը Բաքու տենչում էին էսէռամենշևիկյան և դաշնակցական դավաճանները: Բաքվի բանվորները՝ ադրբեջանցիներ, հայեր, ռուսներ, վրացիներ, լեհնականներ, հրեաներ, Ադրբեջանի գյուղացիության հետ կրծքով պաշտպանում էին սովետական իշխանությունը, հերոսական դիմադրություն ցույց տալիս հակահեղափոխությանը: Այդ ծանր օրերին Սովետական Ռուսաստանը հնարավորին չափ օգնեց Բաքվի պրոլետարիատին՝ այնտեղ ուղարկելով զինված ուժեր, սննդամթերք, հաց:

Մարտական պոստում էին բոլոր կոմիսարները: Ֆիոլետովը կարմիրգվարդիական զորամասերը համալրեց ի հաշիվ նավթարդյունաբերության բանվորների: Լինելով առաջագծում, խրամատներում՝ նա իր խիզախությամբ ոգեշնչում էր մարտիկներին: Բաքվի սովետի հուլիսի 16-ի նիստում և Բիբի-Էյբաթում հուլիսի 24-ին, բազմամարդ միտինգում, Ֆիոլետովը վճռականապես հանդես եկավ մենշևիկների, էսէռների, դաշնակների դավադրության դեմ, բացահայտեց անգլիական իմպերիալիստների և նրանց գործակալ սոցիալ-դավաճանների ոտնձգությունները:

Ձեռնարկված միջոցներին՝ հուլիսի 31-ին Բաքվի կոմունան ժամանակավորապես ընկավ: Բաքու մտան անգլիացիները: Ստեղծվեց «Ցենտրոկասպիայի դիկտատուրա»-ն: Սակայն չէր վերացել և թուրքական ներխուժման վտանգը: Այս պայմաններում էլ Ֆիոլետովը, Ազիզբեկովը, Ջափարիձեն ղեկավարում էին Բաքվի կոմիտեի մարտական ջոկատները թուրքական հրոսակախմբերի դեմ:

Պայքարի թեժ պահին ժողովրդի պանծալի զավակները նողկալի դավադրությամբ ձերբակալվեցին և նետվեցին Բաիլովի բանտը: Բանտում գտնված ժամանակ բանվորներն իրենց սիրո, վստահության և երախտիքի խոսքը արտահայտեցին փորձված ղեկավարների նկատմամբ, նրանց ընտրելով Բաքվի սովետի կազմում. Շահումյանին և Ազիզբեկովին՝ քաղաքային շրջանում, Ջափարիձեին՝ Սաբունչիում, Ֆիոլետովին ու Ձևինին՝ Ռամանում:

Անգլիական իմպերիալիստների և նրանց էսէռ կամակատարների ձեռքով 1918 թ. սեպտեմբերի 20-ին Անդրկասպյան անապատներում գազանաբար գնդակահարվեցին Բաքվի 26 կոմիսարները:

Մեր երկրի այսօրվա մեծագործություններում, անշուշտ, կա հեղափոխության մեծ մարտիկների, այդ թվում և Իվան Ֆիոլետովի եռանդի, հոգևոր ուժի, բարոյական անաղարտության մասնիկը, մարդու, որն իր կարճ, բայց հերոսական կյանքը անմնացորդ նվիրաբերեց կուսակցության և բանվոր դասակարգի գործին: Քանանվեց անմահ հերոսները մեզ հետ են, նրանք կլինեն և այն սերունդների շարքերում, որոնք կգան մեզանից հետո:



digitised by A.R.A.R.@

# ԲԻՈՏԵԽՆՈԼՈԳԻԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ՄԱՐԴՈՒՆ

**Ս. ՍԱՐԳՍՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ գյուղատնտեսությունը և բնության կենդանի ռեսուրսների օգտագործման մյուս բնագավառները հանդիսանում են մարդու կենսաբանական գիտելիքների կիրառման օրինակներ և, այդ իմաստով, կարող են դիտվել իբրև բիոտեխնոլոգիայի ծագման ու զարգացման նախափուլեր: Բնության կենդանի տարրերի և դրանցից ստացվող մթերքների մշակման ու վերամշակման այդ գործողությունները ուղղված են մարդու կյանքի պահանջմունքների բավարարմանը: Սակայն այժմ բիոտեխնոլոգիա ասելով նկատի չեն առնվում այդ գործողությունները: Գյուղատնտեսական արտադրանքի աղբյուր են առավելապես արհեստականորեն բուծվող բույսերի ու կենդանիների՝ արտաքինից պարզ թվացող մթերքները՝ հատիկը, պտուղը, կաթը, միսը և այլն, մինչդեռ ժամանակակից բիոտեխնոլոգիայի արտադրանքներն են կազմում բնության կենդանի տարրերի դրսևորած, արտաքին հայացքից «թաքնված» թվացող կարողություններով կամ ժառանգաբար «վերակառուցումով» պայմանավորված մթերքները:

Այդ առումով, բիոտեխնոլոգիայի առանցքային ուղղություններից հիմնականը դարձավ միկրոօրգանիզմների զանգվածային բուծումից ստեղծվող տնտեսական արժեքավոր մթերքների (միացությունների) ստացումը: Ճիշտ է, միկրոօրգանիզմները վաղուց ի վեր կիրառվում են մարդու կյանքում հացաթխման, կաթնամթերքների արտադրության, գինու, գարեջրի արտադրության, անասնակերի սիլոսացման և մի շարք այլ բնագավառներում: Վերջին տասնամյակներում շեշտակիորեն ընդլայնվել են թե՛ միկրոօրգանիզմներից ժողովրդական տնտեսության անհրաժեշտ մթերքների ստացման և թե այդ աշխատանքների կազմակերպման տեխնոլոգիայում ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների օգտագործման բնագավառները:

Ներկայումս միկրոօրգանիզմները բուծվում են բարձրարժեք սպիտակուցների, անփոխարինելի ամինաթթուների, ֆերմենտների, վիտամինների, անտիբիոտիկների և կենսաբանական ակտիվությամբ օժտված բազմաթիվ միացությունների ստացման նպատակով: Այսօր այդ մեթոդները լայնորեն կիրառվում են անասնակերի լիարժեքությունն ապահովելու և, այդպիսով, գյուղատնտեսական կենդանիների մթերատվությունը բարձրացնելու նպատակով, ինչպես և սննդարդյունաբերության, բժշկության պահանջմունքների բավարարման ասպարեզում:

Այս խնդիրների լուծման տնտեսական արդյունավետությունը պայմանավորված է հիմնականում միկրոօրգանիզմների արագ բազմացմամբ ու կենսազանգվածի ստացմամբ, իսկ մյուս կողմից՝ նրանց սննդի համեմատաբար էժանագին հումքի աղբյուրների առկայությամբ, ինչպիսին են՝ բնական գազը, քարածուխը, պլաստմասսաները, զանազան ծագում ունեցող թափոնները և այլն: Կարևորը և առավել հեռանկարայինը միկրոօրգանիզմների բուծման կարիքների բավարարումն է՝ ի հաշիվ բնության վերականգնվող ռեսուրսների, մասնավորապես, բուսական հումքի, որը գոյանում է հիմնականում գյուղատնտեսական կուլտուրաների մշակումից ու օգտագործումից, ինչպես և անտառային արդյունաբերության և այլ թափոններից:

Միկրոբների՝ բակտերիաների, շաքարասնկերի տնտեսական օգտագործման գերակշռելիությունը ներկա պայմաններում պետք է համարել բիոտեխնոլոգիայի կիրառման ելակետային փուլ: Կյանքի երևույթների դրսևորման ներքին օրինաչափությունների բացահայտման ասպարեզում կենսաբանական գիտության ժամանակակից նվաճումները հնարավորություններ են ստեղծել կենդանի մարմինների տարբեր ձևերի նպատակասլաց վերակառուցման և տնտեսական պիտանիության բարձրացման համար: Ավելին, կենսաբանության ներկայիս նվաճումները հնարավորություն են ընձեռում գիտականորեն հիմնավորված կռահումներ անելու բնությանն անհայտ միկրոբանման էակների արհեստական ստեղծման մասին, որոնք մոտ ապագայում իրենց մթերատվությամբ պետք է գերազանցեն ներկայիս ձևերին:

**Գենետիկայի նվաճումները և գենետիկական մտածելակերպը որպես կենդանի բնության նպատակամետ վերափոխման ու օգտագործման ուղեցույց:** Վերջին մի քանի տասնամյակներում ժառանգականության հատկությունն ուսումնասիրող գիտության՝ գենետիկայի սրընթաց զարգացման շնորհիվ զգալիորեն ընդլայնվել ու խորացել են մարդու գիտելիքները կյանքի երևույթների ճանաչման վերաբերյալ: Դեռևս մեր դարի քառասնական թվականներին պատկերացում չկար ժառանգականությունն ապահովող նյութի քիմիական բնույթի, ինչպես և ժառանգական ապարատի ֆունկցիայի ապահովման ներքին գործողությունների մասին: Վերջին 2—3 տասնամյակներում միայն բացահայտվեցին կյանքի այդ ակունքային երևույթի իրականացման ուղիները և ամենագլխավորը՝ ի հայտ եկան քիմիական այն միացություններն ու դրանց կառուցվածքային առանձնահատկությունները, որոնց առկայությունն ապահովում է կենդանի էակի դրսևորած բոլոր հատկությունները: Չափազանցություն չի լինի ասել, որ գենետիկայի հայտաբերած օրինաչափություններն այնքան նշանակալից են, որ այժմ անհնար է թվում գնահատել դրանց գիտական արժեքը, եթե իրենց ծագումով ու դրսևորման բնույթով դրանք չեն բխեցվում ժամանակակից գենետիկայի, մասնավորապես, մոլեկուլային գենետիկայի դրույթներից:

Որո՞նք են ժամանակակից բիոտեխնոլոգիայի առաջընթացի հիմքը հանդիսացող այն նվաճումները, որ պետք է դառնան ո՛չ միայն կենսաբանների, այլև ամեն մի կուլտուրական մարդու սեփականությունը:

Բջիջը, որը կյանքով օժտված նյութի ամենափոքր մասնիկն է, պատկերավոր ասած՝ մի փոքր քիմիական գործարան է, որի սահմաններում իրականանում են կյանքին բնորոշ բոլոր գործողություններն ու հատկությունները: Այժմ անվիճելիորեն ապացուցված է, որ բջջում ընթացող կենսագործողությունները հսկվում և կարգավորվում են նրա կորիզի կողմից: Բջջակորիզը ղեկավարման ֆունկցիան իրականացնում է իր կառուցվածքում գտնվող նուկլեինաթթուների, մասնավորապես, դեզօքսիռիբոնուկլեինաթթվի (ԴՆԹ) միջոցով, քիմիական մի միացություն, որը բնականից հատուկ է միայն կենդանի մարմիններին:

Պարզվել է, որ ԴՆԹ-ի մոլեկուլային կառուցվածքում քիմիական լեզվով «գրված» է բջջին և նրանից կազմված օրգանիզմներին (ներառյալ մարդուն) բնորոշ բոլոր հատկությունների ու հատկանիշների դրսևորման ծրագիրը, դրանց իրականացման ու դրսևորման կարգավորվածությունը: ԴՆԹ-ի այդ հատկությունն ապահովվում է նրա անկրկնելի երկշղթա կոմպլեմենտար կառուցվածքով, որով պայմանավորված է նրա ինքնակրկնապատկման հատկությունը: ԴՆԹ-ի այդ հատկությունն ապահովում է թե՛ կյանքի հարատևումը մեր մոլորակի վրա մահվան անխուսափելիության պայմաններում և թե օրգանիզմներին բնորոշ բոլոր հատկանիշների կայուն փոխանցումը հաջորդ սերնդին, մի հատկություն, որը կոչվում է ժառանգականություն և դարձել է գենետիկայի ուսումնասիրման առարկան:

Այսպիսով, ԴՆԹ-ն հանդես է գալիս իբրև կյանքի գոյության հիմքում ընկած ժառանգականության ծրագրակիր, որի ամբողջականության և անաղարտության պահպանումը ծառայում է իբրև կյանքի դրսևորման ու լիարժեքության չափանիշ:

Սրանք են այն դրույթները, որոնց հիման վրա ստեղծվել է գենետիկական մտածելակերպը և, որոնց մեկնաբանումն ու էքսպերիմենտալ վերահաստատումը ժամանակակից բիոտեխնոլոգիայի հրաշագործ ուղղության՝ գենային ինժեներիայի և մյուս բնագավառների զարգացման աղբյուրն է:

**Գենային ինժեներիան որպես բնության կենդանի տարրերի վերափոխման (վերակառուցման) միջոց:** Երբ բացահայտվեց ԴՆԹ-ի դերը՝ իբրև ծնողական ձևերից սերնդին ժառանգվող կենսաերևույթների ու հատկանիշների դրսևորումը պայմանավորող ծրագրակրի, բնականաբար հարկ եղավ պարզել, թե ինչպիսի՞ն են, ի՞նչ սկզբունքով են «գրված» ժառանգականության «ծրագրերը» կարգաբանորեն տարբեր օրգանիզմներին բնորոշ ԴՆԹ-ի մոլեկուլային կառուցվածքում, և ինչպե՞ս են տեղադրված այդպիսի «ծրագրերը» ԴՆԹ-ում: Այդ ասպարեզում տարվող հետազոտություն-





digitised by A.R.A.R.@

ների արդյունքները գերազանցեցին սպասելիքները: Պարզվեց, որ անկախ կարգաբանական դիրքից, բոլոր օրգանիզմների ԴՆԹ-ում ժառանգականության «ծրագիրը» գրված է նույն սկզբունքով և, որ նույն հատկանիշի դրսևորման ծրագիրը տարբեր օրգանիզմների ժառանգական ապարատում կարող է կարդացվել և իրականանալ նույն ձևով:

Պարզվեց, որ ամեն մի հատկանիշի ժառանգական ծրագիրը տեղադրված է ԴՆԹ-ի մոլեկուլի որոշակի հատվածում կամ հատվածներում, և որ դրանք կարող են առանձնացվել ու վերծանվել հայտնաբերելու համար դրանց կառուցվածքի կենսաքիմիական բաղադրիչները, դրանց դիրքը միմյանց նկատմամբ: Այդ հայտնագործությունները հնարավորություն ընձեռեցին ո՛չ միայն զատելու ԴՆԹ-ի առանձին-առանձին իմաստավորված, այսինքն՝ որոշակի հատկանիշի դրսևորումը պայմանավորող հատվածները՝ գեները, այլև իրականացնելու դրանց արհեստական սինթեզը և ստեղծելու հատուկ տեխնիկական միջոցներ՝ սարքեր, գեների արհեստականորեն ավտոմատացված սինթեզման համար: Դրանց շնորհիվ հնարավոր եղավ օրգանիզմների մի տեսակի գենետիկական ծրագրին միացնել մեկ այլ օրգանիզմի գենանյութը, վերակառուցելով (վերաձևավորելով) նրա ժառանգականության ապարատը, հասնել տեղափոխված գենի դրսևորմանը: Այժմ կարելի է թվել գենային ինժեներիայի օգնությամբ իրականացված ժառանգականության վերափոխման բազում օրինակներ, որոնց թվում նաև մարդուն անհրաժեշտ որոշ նյութերի արտադրության ապահովումը:

Գենետիկական տրանսֆորմացիայի ցայտուն օրինակ է մարդու ենթաստամոքսային գեղձի արտադրած ինսուլինի գենի տեղափոխումը բակտերիային (Escherichia coli) և դրանից միայն մարդուն բնորոշ ինսուլինի ստացումը: Այդ հորմոնը, որի անբավարարության դեպքում երևան է գալիս շաքարախտ հիվանդությունը և որից տառապում են տասնյակ միլիոնավոր մարդիկ, մինչև այժմ ստացվում էր կենդանիների գեղձերից. մոտ 500 գրամ ինսուլինի ստացման համար վերամշակվում էր մոտ 4 տոննա գեղձազանգված, ընդ որում այդ եղանակով արտադրված հորմոնը որակով զիջում է մարդու ինսուլինին, քանի որ այն օժտված է տեսակասպեցիֆիկությամբ: Ապագայում շաքարախտի բուժումն ամենուրեք կատարվելու է գենային ինժեներիայի օգնությամբ վերակառուցված միկրոօրգանիզմներից ստացված լիարժեք մարդկային ինսուլինով:

Սկզբունքորեն նույն ճանապարհով իրականացվել է նաև մարդու և կաթնասուն կենդանիների մյուս տեսակների բջիջներում արտադրվող սպիտակուցի՝ ինտերֆերոնի սինթեզը, որի օգնությամբ օրգանիզմը պաշտպանվում է հիվանդաբեր վիրուսներից: Ինտերֆերոնի գենն առանձնացնելու նպատակով մարդու լեյկոցիտների և ֆիբրոբլաստների արտամարմնային կուլտուրան վարակվել է հիվանդաբեր վիրուսով՝ նրանց մոտ ինտերֆերոնի գենի բազմացման և ֆունկցիոնալ ակտիվացման նպատակով: Այնուհետև ակտիվ գենի այդպիսի պատճենից, բջջին հատուկ ֆերմենտի՝ ռիվերտազայի օգնությամբ ստացվել է ԴՆԹ-ի այդ գենի հատվածը, որն այնուհետև հատուկ եղանակով մուծվել է տվյալ դեպքում աղիքային ցուպիկին բնորոշ պլազմիդայի կառուցվածքի մեջ: Վերջինս հեշտությամբ թափանցելով բակտերիայի մեջ, իր հետ տանում է մարդու գենը և միաձուլվում այն բակտերիայի ժառանգական ծրագրին, պայմանավորելով մարդկային սպիտակուցի՝ ինտերֆերոնի արտադրությունը բակտերիայի օրգանիզմում:

Պարզվել է, որ ինտերֆերոնի միկրոբիոլոգիական արտադրությունը շատ ավելի արդյունավետ է. մեկ լիտր միկրոբային կուլտուրայից ստացվում է 2,5 . $10^8$ միավոր ինտերֆերոն: Կարևոր է նշել, որ փորձարարական ճանապարհով ստուգվել է «բակտերիալ ինտերֆերոնի» բուժիչ որակը: Փորձերից մեկում կապիկների բակտերիալ ինտերֆերոնով բուժվող և ստուգիչ խմբերը վարակվել են հիվանդաբեր վիրուսով, որի ժամանակ բոլոր կապիկները ողջ են մնացել, իսկ ստուգիչ չբուժվողները մահացել են:

Նման արդյունք է ստացվել նաև զուգահեռ դրված փորձերում, որի դեպքում վարակված կապիկները բուժվել են մարդու լեյկոցիտներից ստացված ինտերֆերոնով: Գենոինժեներիայի կիրառման նման եղանակով հաջողվել է բակտերիալ բջիջների ժառանգական ծրագրին միացնել մարդու սոմատոստատին կոչվող հորմոնի գենը, սպիտակուց, որը կարգավորում է աճի հորմոնի և ինսուլինի արտադրությունը մարդու օրգանիզմում և օգտագործվում է ակրոմեգալիա և շաքարախտ հիվանդությունների բուժման համար:

Սակայն գենային ինժեներիայի նվաճումների գագաթնակետը չէ այդ՝ մեկուսացված կամ արհեստականորեն սինթեզված գեների փոխադրումը մեկ օրգանիզմից մյուսին, կամ մարդուց՝ միկրոօրգանիզմին: Ավելի հեռանկարային պետք է համարել գենի փոխադրումը բարձրակարգ օրգանիզմներին և, մասնավորապես, կաթնասուններին: Այստեղ կարելի է հիշատակել կրծողների երկու տեսակի՝ առնետների և մկների միջև իրականացված գենոինժեներային հաջող փորձը, որի ժամանակ մկան օրգանիզմն է տեղափոխվել առնետների աճի հորմոնի (սոմատոտրոպինի) արտադրությունը պայմանավորող գենը, որը հաջողությամբ միաձուլվել է մկան ժառանգականության նյութի հետ: Օրգանիզմի ժառանգականության վերակառուցման այս փորձի իրականացման աշխատանքներում մկան օրգանիզմից հանվել է բեղմնավորված ձվաբջիջը և նրա կորիզի մեջ սրսկվել առնետի աճի հորմոնի գենը: Այնուհետև ձվաբջիջը կրկին վերադարձվել (տրանսպլանտացվել) է մկան սեռական ուղիները, նրա հետագա զարգացումն ապահովելու նպատակով:

Հայրուրից ավելի փորձերում ծնված 21 մկներից 6-ի մոտ գործել է առնետի աճի հորմոնի գենը և այդպիսի անհատների մոտ նկատվել է աճի առավել բարձր աստիճան: Փորձամկների արյան շիճուկի ուսումնասիրություններով պարզվել է, որ աճի բարձր ցուցանիշներ դրսևորած մկների մոտ աճի հորմոնի քանակը 400 անգամ ավելի բարձր է, քան սովորական մկների մոտ: Վերջապես, հույժ ուշագրավ են նկարագրված գենոինժեներային փորձի արդյունքները, երբ նկատի է առնվում, որ աճի բարձր ցուցանիշ դրսևորած արու մկներից մեկի սերնդում ծնված 19 ձագերից 10-ը ցուցաբերել է աճի նկատելի բարձր ցուցանիշ: Այդ փաստն իրավունք է տալիս ասելու, որ առնետից փոխադրված աճի հորմոնի գենն իրոք ներհյուսվել է մկան ժառանգական ծրագրի մեջ և, սեփական գեների նըման, ժառանգաբար փոխանցվել իր սերնդին:

Նման հաջողություն է արձանագրվել գենոինժեներային այն փորձերում, որոնց ժամանակ ճագարի էրիտրոցիտների բաղադրիչ սպիտակուցի՝ գլոբինի սինթեզը պայմանավորող գենն ինտեգրացվել է մկանը: Այդ նպատակով ճագարի նշված գենն առանձնացվել ու բազմացվել է պլազմիդայի օգնությամբ ու ներարկվել մկան սեռական ուղիներից հանված բեղմնավորված ձվաբջջի կորիզի մեջ, որից հետո այն նորից տեղափոխվել է մկան օրգանիզմը: Այդ եղանակով ստացված 24 ձագերից միայն ինը դրսևորեցին ճագարին բնորոշ գլոբինի գոյացում: Իսկ այդպիսի արու և նորմալ մկների զուգավորումից ստացված բոլոր սերունդները դրսևորեցին ճագարից տեղափոխված գենի պայմանավորած գլոբինը:

Փորձերի նման արդյունքն օգտագործվել է ո՛չ միայն տեղափոխված գենը մկան ժառանգականությանը միաձուլելու փաստը հաստատելու համար, այլև մկան սերնդում նրա առկայությունը հայտնաբերելու նպատակով: Այդ արդյունքը վկայում է, որ հեռու չէ այն ժամանակը, երբ գենային ինժեներիան կօգտագործվի բարձրակարգ կենդանիների (ինչպիսին ընտանի կենդանիներն են) ժառանգականության նպատակադիր փոփոխման աշխատանքներում, առանց խաչասերման: Դժվար չէ պատկերացնել, թե ինչպիսի խոստումնալից ապագա կունենա այդպիսի նորույթը: Բիոտեխնոլոգների կռահումներով, եղջերավոր անասունների մոտ հնարավոր կլինի ստեղծել, օրինակ, այնպիսի կովեր, որոնց տարեկան կաթնատվությունը կգերազանցի 20 հազար լիտրից: Մի նվաճում, որին հասնելը ներկայիս սելեկցիայի եղանակով (օգտագործելով սեռական բազմացումը) պրակտիկորեն կարելի է անիրագործելի կամ չափազանց դըժվարիրագործելի համարել:

Կովերի օրինակը բերվում է գենային ինժեներիայի ապագան պատկերացնելի դարձնելու նպատակով, բայց չէ՛ որ նման վերաձևափոխումներ հնարավոր կլինի կատարել բազմաթիվ այլ կենդանատեսակների հետ:

Տողերիս հեղինակը, հանրապետության մասնագետների հետ համատեղ, նախագծում է, գենային ինժեներիայի օգնությամբ, պտղաբուծության վտանգավոր վնասատուի՝ խնձորենու պտղակերի ժառանգական ապարատին միաձուլել թթենու շերամից վերցված մի գեն, որը պայմանավորում է ձվերը սուբստրատին (ճյուղին, տերևին, պտղին...) կպցնելու թիթեռի անկարողությունը: Այդպիսի գենի առկայությունը խնձորենու պտղակերի և այլ վնասատուների ժառանգականության ծրագրում՝ կհանգեցնի այն բանին, որ նրա թիթեռի դրած ձվերը անձրևի և քամու միջոցով կթափվեն պտղատու ծառից և կոչնչանան առանց պայքարի այլ ձևերի կիրառման:

Բուսաբուծության ասպարեզում գենային ինժեներիայի կիրառման աշխատանքներից պարզվել է, որ գենետիկական ինֆորմացիա կրող ԴՆԹ-ն կարելի է ներարկել այս կամ այն եղանակով տրանսֆորմացվող բույսի բըջիջները, և բույսը կդրսևորի իր ձեռք բերած ժառանգական «ծրագիրը»:

Յուրօրինակ և առավել արդյունավետ են այն աշխատանքները, երբ գեն-փոխադրիչը հանդես է եկել իբրև մի միկրոօրգանիզմ՝ ագրոբակտերիում, որը, ըստ էության, հանդիսանում է բույսի պարազիտը: Թափանցելով բույսի արմատի մեջ, ագրոբակտերիումն առաջացնում է տեղական նշանակություն ունեցող ուռուցք, որից այնուհետև առաջանում են փոքրիկ արմատիկներ: Եթե ագրոբակտերիումին նախապես իր ունեցած պլազմիդայի միջոցով «բարձում» են կողմնակի, օրինակ, մար-





digitised by A.R.A.R.@

դու ինտերֆերոնի արտադրությունը պայմանավորող գեն, ապա, թափանցելով բույսի բջջի մեջ, նա տեղափոխում է նաև իր «բեռը»՝ ինտերֆերոնի գենը: Կարևորն այն է, որ այդպիսի գենն այնուհետև կարող է թափանցել բույսի բջիջը, որից գոյացող նոր արմատը և այդպիսի արմատի բջիջներից ստացված բույսը իր ժառանգական ապարատում կունենա բակտերիայի տեղափոխած մարդու ինտերֆերոնի գենը: Եվ իրոք, գենային ինժեներիայի մեթոդով կատարվել է նման փորձ, օգտագործելով ծխախոտի բույսը (որի արմատները բարենպաստ են ագրոբակտերիումի պարազիտման համար), և ստացվել է բույս, որն արտադրում է մարդու ինտերֆերոն: Զուր չէ, որ մարդիկ կատակում են, թե ապագայում ծխախոտը, իր վնասակար հատկությունների հետ մեկտեղ, ծխողներին պաշտպանելու է վիրուսային հիվանդություններից:

Ամփոփելով և գնահատելով գենային ինժեներիայի հեռանկարները, կարելի է հաստատ ասել. կանցնի կարճ ժամանակ, և մարդու գործունեության այդ ուղղությունը, օգտագործելով ժամանակակից գիտատեխնիկական հնարավորությունները, կստեղծի բնության անհայտ բուսատեսակներ, այնպիսի օգտակար ձևեր, որոնց նկարագրումն այսօր կարող է միայն ֆանտաստիկ թվալ:

**Բիոտեխնոլոգիան որոնում և կիրառում է բարձրակարգ օրգանիզմների բազմացման ու բուծման նոր, առավել արդյունավետ եղանակներ:** Կյանքի գոյության և նրա երևույթների գենետիկական մեկնաբանումը վճռականորեն հեղաշրջեց կենդանի մարմինների վրա մարդու գիտակցված ներգործության բնույթը, ինչպես և նրանց հատկություններով պայմանավորված մթերքների որակական և քանակական կառավարման էությունը:

Բարձրակարգ օրգանիզմների կառուցվածքային միավորը՝ բջիջը, համարվում է կյանքի տարրական մասնիկը, իսկ դրանում ընթացող գործողությունները՝ բջջակորիզի ԴՆԹ-ում գրված ժառանգականության ծրագրի իրականացումն են: Այս փաստի հիման վրա էլ բջջի գենետիկական ապարատի մորֆոլոգիական և կենսաքիմիական կառուցվածքային առանձնահատկությունները դիտվում են իբրև կյանքի ու դրա ինքնավերարտադրման դրսևորման ու հետագա մորֆոգենեզի լիարժեքության չափանիշ:

Եվ ստեղծվեցին բարձրակարգ օրգանիզմներից մասնատված հյուսվածքների, իսկ այնուհետև բջիջների մարմնից դուրս դրանք խնամելու, բազմացնելու, հաջորդ փուլում՝ դրանցից նաև լիարժեք օրգանիզմների ստացման եղանակներ:

Առավել ակնբախ են բուսական օրգանիզմների հետ տարված գիտական հետազոտությունների արդյունքները: Այն փաստը, որ բուսական կտրոններից կարելի է աճեցնել նոր, մայրական բույսին իդենտիկ (ժառանգապես նույն) բույս, մարդն օգտագործել է դարեր ի վեր և օգտագործում է մինչև օրս: Մինչդեռ մոտ 25 տարի առաջ գիտությանը հայտնի դարձավ բարձրակարգ բույսերի բջիջներն առանձնացնելու և դրանց կոշտ պեկտինոցելյուլոզային թաղանթից զրկելու հնարավորությունը, որն անհրաժեշտ է այդպիսի բջիջների ինքնուրույն գոյությունը պաշտպանելու, սնվելու և վերարտադրական ակտիվություն ցուցաբերելու համար: Թաղանթազուրկ բուսական բջիջները կամ պրոտոպլաստները դարձան գործնական կարևոր նշանակություն ունեցող մի շարք միջոցառումների մշակման առարկա:

Պարզվել է, որ պրոտոպլաստներն ակտիվ արձագանքում են գոյության պայմաններին, կարող են բազմանալով գոյացնել բազմաբջիջ կալյուսանման մարմիններ, որոնցից զարգանում են արմատներ և ամբողջական բույս: Բույսերի որոշ տեսակների մոտ բազմացման այս ձևն արդեն ստացել է տնտեսական նշանակություն:

Ձեռք բերված հաջողությունները հիմք են տալիս հուսալու, որ հեռու չէ այն օրը, երբ պրոտոպլաստների օգտագործմամբ հնարավոր կլինի բազմացնել թե՛ գյուղատնտեսական և թե անտառային տնտեսության համար արժեքավոր ծառատեսակներ: Բույսերի բազմացման այս ձևը կարող է դառնալ տնտեսական ամենաարդյունավետ եղանակն այն իմաստով, որ անցյալի գիրկը կանցնեն կամ կվերափոխվեն ներկայիս տնայնագործական թվացող տնկարանները և դրանց օգնությամբ ելանյութի արտադրության մեթոդները, իսկ դրանց կփոխարինի մեքենայացման բարձր մակարդակի վրա գտնվող, անհամեմատ փոքր տարածքների վրա կազմակերպվող տնկանյութի արտադրությունը:

Բարձրարժեք, նույնիսկ եզակի բույսերի տարբեր օրգաններից՝ անման կոներից, արմատներից, պսակաթերթերից և այլ մասերից ստացված մարմնից դուրս բազմացող բջիջներից հնարավոր կլինի ստանալ ժառանգապես համարժեք (կլոնային) միլիոնավոր տընկիներ և դրանցից ստեղծել արդյունաբերական անկարկներ կամ անտառներ: Ընդ որում այդպիսի տնկարկների խնամքն ու մշակումը զգալիորեն կհեշտանա նրանով, որ կհավասարվեն դրանց պահանջները կենսապայմանների (ագրոտեխնիկայի) նկատմամբ և կստեղծվի դրանցից ստացվող մթերքների (բերքի) որակի և քանակի առավելագույն միատարրություն:

Պրոտոպլաստների ստացումը և դրանց արտամարմնային բազմացումը ռեալ հնարավորություններ են ստեղծում հաղթահարելու հեռավոր հիբրիդիզացիայի ասպարեզում գոյություն ունեցող այն դժվարությունները, որոնք ի հայտ են գալիս սեռական եղանակով բազմացման ժամանակ:

Արդեն ապացուցվել է, որ պրոտոպլաստների օգտագործմամբ կարելի է միաձուլել տարբեր տեսակներին պատկանող բույսերի ժառանգական ապարատները՝ գենոմները և ընտանալ տարբեր բուսատեսակներին բնորոշ մթերքներ մեկ հիբրիդային բույսից: Այսպես, օրինակ, կարտոֆիլի և պոմիդորի միացումից հաջողվել է ստանալ «կարտոմիդոր» բույսը, որն ունակ է կարտոֆիլի պալարներ գոյացնելու հետ մեկտեղ առաջացնել նաև պոմիդորի պտուղներ, կամ բազուկի և սպանաղի հիբրիդի մասին, որին կատակով անվանում են «բուսական բիֆշտեքս» և այլն: Եվ եթե այդ հնարավորության կիրառական օգտագործումը դեռևս սահմանափակված է տեխնիկական բնույթի տարբեր դժվարություններով, կասկածից վեր է, որ դրանք կհաղթահարվեն, և միջտեսակային հիբրիդիզացիան կզբաղեցնի արժանավայել տեղ բնության կենդանի տարրերի նպատակադիր վերափոխման և կիրառական օգտագործման ասպարեզում:

Պրոտոպլաստների ստացման ու արտամարմնային բազմացման հնարավորությունը բարենպաստ պայմաններ է ստեղծել բուսատեսակների գենետիկական ու կառուցվածքային ձևափոխման համար: Բույսերի ժառանգական «վերակառուցման» բնագավառում կատարվող աշխատանքներին վերաբերող փորձերից բացի, հարկ է նշել նաև պրոտոպլաստների կորիզին կողմնակի գենանյութ միացնելու և դրանցից ձևափոխված բույսեր ստանալու փորձերի մասին: Այդ եղանակով ժառանգապես փոփոխված բույսի օրինակ է արևածաղիկը, որը դրսևորում է նաև լոբուն բնորոշ ֆազեոլինի սինթեզման ունակություն, մի նյութ, որը պայմանավորում է թիթեռնածաղկավոր այդ բույսին բնորոշ համը: Ամենից հաճախ այդ ուղղությամբ ձեռնարկվող որոնումների նպատակն է օդի ազոտը յուրացնելու ունակությունից զուրկ բուսատեսակներին փոխանցել այդ հատկությունն ունեցողների գենը, որը շեշտակի կբարձրացնի մարդու գործունեության այդ բնագավառի արդյունավետությունը:

Իրավ, անպատկերացնելի են գենային ինժեներիայի հնարավորությունները: Կարելի է միայն երևակայել, թե ինչպիսի բուսատեսակներ են փոխարինելու ներկայիս դաշտերն զբաղեցնող բանջարաբոստանային կամ հացահատիկային կուլտուրաներին:

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերված կենդանիների բազմացման, բուծման, ինչպես նաև կենդանիների մարմնից մեկուսացված բջիջներն արտամարմնային պայմաններում բազմացնելու և արտադրական նպատակներով դրանց օգտագործման բնագավառում:

Կարելի է հաստատ ասել, որ սկզբունքորեն չկա տարբերություն կենդանական և բուսական բջիջների միջև՝ կյանքի և նրա երևույթների դրսևորման ժառանգական ծրագիրը կրող նյութի՝ ԴՆԹ-ի ֆունկցիոնալ գործունեության ու քիմիական կառուցվածքի իմաստով: Կարելի է միայն տարբերություն նկատել այդ բջիջների կառուցվածքային տարրերի և արտաքին պայմանների նկատմամբ ունեցած նրանց պահանջկոտության, ինչպես և այդ պայմաններին արձագանքելու բնույթի միջև, որը, ի դեպ, որոշակիորեն արտահայտված է նաև բույսի կամ կենդանու տարբեր հյուսվածքներից ստացված բջիջների միջև:

Երկկենցաղ կենդանիների վրա իրականացված հետազոտությունների արդյունքները ցույց տվին կենդանու բարձրաստիճան դիֆերենցված բջիջների կորիզների ժառանգապես լիարժեքությունը նոր օրգանիզմների զարգացումը կառավարելու մարզում: Մի քանի տարի առաջ մամուլում հրապարակումներ եղան այն մասին, որ մասնագետներին հաջողվել է մարդու մարմնային, հետևապես դիֆերենցված, բջջի կորիզը մարդու ձվաբջիջ տեղափոխելով հղիություն և ծննդաբերություն առաջացնել: Այս առումով կենդանական բջիջների արտամարմնային բուծման հաջող օրինակ կարող է հանդիսանալ, այսպես կոչված, հիբրիդոմների ստացումը և օգտագործումը հակամարմինների արտադրության կազմակերպման ասպարեզում:

Պարզվել է, որ եթե որևիցե անտիգենով իմունացված կենդանու լիմֆոցիտները հիբրիդացվում են մարմնից դուրս բուծվող ողնուղեղից վերցված միելոմային կամ այլ անկաշկանդ բազմացող բջջի հետ և ստացվում է համապատասխան հիբրիդոմ, ապա դրա բազմացումից ստեղծված կլոնային կուլտուրան արտադրում է բարձրարժեք մոնոսպեցիֆիկ հակամարմիններ, որոնք շատ դժվար է ընտանալ այժմ կիրառվող եղանակներով: Այսպիսով, երբ արտամարմնային պայմաններում





digitised by A.R.A.R.@

սկսեցին բուծվել կենդանիներից վերցված բջիջները և դրանց հիբրիդները, սկզբնավորվեց բիոտեխնոլոգիայի արժեքավոր ուղղություններից մեկը՝ իմունոբիոտեխնոլոգիան, որի արտադրանքն արդեն լայնորեն կիրառվում է մարդու հիվանդությունների ախտորոշման ու բուժման գործում: Կարևոր է նշել, որ բիոտեխնոլոգիայի այդ ուղղությունը հեռանկարներ է ստեղծում չարորակ ուռուցքներին բնորոշ անտիգենների ճանաչման և, հնարավոր է, նաև դրանց բուժման համար:

Բուսական բջիջների օգտագործման բնագավառում տարվող աշխատանքների համանմանությամբ կարելի է ասել, որ գիտությունը կհայտնաբերի մարմնային բջիջների ապադիֆերենցման եղանակներ և այդ ճանապարհով հնարավոր կլինի բարձրարժեք կենդանիներից ստանալ, այսպես կոչված, տոտիպոտենտ (անհատական զարգացման սկզբնակետում գտնվող) բջիջներ, որոնց արտամարմնային բազմացումից ստացվող գոյացումը (սկսնակը) ունակ կլինի զարգանալու այնպես, ինչպես ձվաբջիջը: Այդ ժամանակ նորաստեղծ բջիջների զանգվածը կարելի կլինի տեղափոխել սովորական մայրերի արգանդը և ստանալ ավելի արժեքավոր սերունդ, քան այդ մայրերը կարող էին տալ բնական ճանապարհով: Բույսերի պրոտոպլաստներով բազմացնելու եղանակի հետ ավելի հեռահայաց նմանակումը մեզ հանգեցնում է այն մտքին, որ կենդանիների բջիջներից ստացվող նման մարմինները կշարունակեն կենսագործունեությունը արտամարմնային պայմաններում, մինչև սաղմնային զարգացման փուլի ավարտը և «ծնունդը»:

Ներկայումս այդ աշխատանքները տարվում են մատչելի մակարդակի վրա և նպատակ ունեն շեշտակի բարձրացնել տարեկան մեկ սերունդ տվող կենդանիների, օրինակ, խոշոր եղջերավոր և այլ ընտանի կենդանիների վերարտադրական ֆունկցիան: Տասնյակ տարիներ առաջ հաջողությամբ պսակվեցին բարձրարժեք ցուլերի և առհասարակ արու կենդանիների սեռական արտադրողականության բարձրացման փորձերը: Հայտնի է, որ այժմ արժեքավոր արուներից ստացված սերմնահեղուկն օգտագործվում է ոչ թե մի քանի էգերի սերմնավորման (ինչպես այդ տեղի է ունենում բնականում), այլ հարյուր-հազարավոր էգերի արհեստական սերմնավորման համար: Եվ եթե ընտրված ցուլը պատկանում է բարձր ցեղայնության կամ ընտրությամբ ստացված եզակի անհատների թվին, հոտի մթերատվությունը խիստ բարձրանում է: Ավելին, բիոտեխնոլոգիայի այդ փաղուց ի վեր կիրառվող եղանակը հնարավորություն է ընձեռում տասնյակ տարիներով պահպանել բարձրարժեք արուներից ստացվող սերմնահեղուկը և օգտագործել առանց ժառանգական նյութի կորստի: Այդպիսի եզրակացության կարելի է գալ, երբ սերմնահյութի մեջ գտնվող սպերմատոզոիդները, որոնք պրակտիկորեն կազմված են համարյա թե միայն կորիզանյութից, մենք դիտում ենք իբրև ժառանգականության ծրագրակիրներ:

Այժմ ինտենսիվ աշխատանք է տարվում կովերի բազմացման պոտենցիալը բարձրացնելու, նրանցից ավելի շատ ձվաբջիջներ ստանալու կամ ամեն մի բեղմնավորված ձվաբջջից ավելի շատ հորթեր ստանալու նպատակով, որի շնորհիվ կհաջողվի շեշտակի բարձրացնել թե՛ հոտի մթերատվությունը և թե նրա տոհմայնությունը: Մշակվել է նոր տեխնոլոգիա կովերից ստացվող երիտասարդ սաղմերը ցածր ջերմային պայմաններում երկար պահպանելու համար, մինչև համապատասխան ընդունող մայր հայտնաբերելը, և նույնիսկ ձվարաններից թերահաս ձվաբջիջներ հանելու, արտամարմնային պայմաններում հասունացման ու բեղմնավորման համար, որոնց արդյունավետությունը հաստատված է այդ ճանապարհով լիարժեք հորթերի ստացման օրինակներով:

Առավել արդյունավետություն է սպասվում մեկ բեղմնավորված ձվաբջջից մի քանի ելասաղմեր ստանալու և դրանցից յուրաքանչյուրից լիարժեք սերունդ զարգացնելու աշխատանքներից: Այդ երևույթը մարդուն ծանոթ է բնականից, միաձու երկվորյակների զարգացման փաստից: Ժամանակակից տեխնիկայի առկայությամբ այդպիսի երկվորյակներ կարելի է ստանալ, օրինակ, եթե բարձրարժեք կաթնատու կենդանու բեղմնավորված ձվաբջիջը, սաղմնային զարգացման վաղ փուլերում (երբ գոյացել են 4—8—16 և ավելի համարժեք բլաստոմերներ), գոյություն ունեցող ֆերմենտների օգնությամբ առանձնացվեն իրարից և տեղափոխվեն սովորական էգերի սեռական ուղիները: Էգից տարեկան մի քանի տասնյակ սաղմնաբջիջների ստացումը կոմբինացնելով մեկ սաղմից տասնյակ բլաստոմերներ ստանալու հետ, կարճ ժամանակամիջոցում կարելի է բարձրարժեք անհատներից ստեղծել մի ամբողջական, բարձր տոհմայնությամբ (մթերատվությամբ) օժտված կլոնային կենդանիների հոտ, որոնք խնամքի ու կերակրման նույնանման պայմաններում կըցուցաբերեն նույն ժառանգականությունն ու մթերատվությունը: Մի երևույթ, որին դժվար կամ անհնար է հասնել սովորական սեռական բազմացման եղանակով:



Այստեղ անհրաժեշտ է հիշատակել, որ այժմ արդեն գոյություն ունի կենդանիների կլոնային բուծման և նույնիսկ կլոնների տնտեսական օգտագործման օրինակ: Թթենու շերամի մոտ ջերմակուսածնության օգտագործմամբ ստեղծված են բարձր մթերատվությամբ կլոններ. սելեկցիոն աշխատանքներում ստացված շերամի բացառիկ մթերատվությամբ օժտված անհատների չբեղմնավորված ձվերը մշակվում են բարձր ջերմաստիճանի հեղուկ միջավայրում, կուսածնությամբ զարգանալով՝ դրանք առաջացնում են իրենց մոր պատճենը հանդիսացող սերունդներ:

Այդպիսի կուսածին զարգացող կլոնների սերունդները՝ պարտենոգենները, արդեն ավելի քան 30 սերունդ ապրում են առանց հոր, ամեն դեպքում դրսևորելով ո՛չ միայն իրենց ելամորը բնորոշ մորֆոլոգիական, նույնիսկ մանր թվացող հատկանիշները, այլև այն մթերատու հատկությունները, որոնք երկսեռ ճանապարհով բազմանալու դեպքում անխուսափելիորեն կարող էին «անհետանալ» սերունդներում՝ ժառանգական հատկանիշների օրինաչափ ճեղքման հետևանքով:

Այժմ փորձնական ճանապարհով պարզված է, որ շերամի կլոնների ու սովորական ցեղերի հիբրիդներն իրենց մթերատվությամբ նըկատելիորեն գերազանցում են շրջանացված հիբրիդներին և կարող են առաջադրվել արտադրական նպատակներով բուծելու համար:

Բարձր գնահատելով բիոտեխնոլոգիայի ընձեռած հնարավորությունների օգտագործման կարևորությունը ժողովրդական տնտեսության և գիտության առաջատար բնագավառների (գյուղատնտեսության, բժշկության, բնության պահպանման և այլն) պահանջմունքների բավարարման ասպարեզում, կուսակցությունն ու կառավարությունը վերջին տարիներին մի շարք որոշումներ են ընդունել բիոտեխնոլոգիայի և մասնավորապես նրա առանցքային ուղղության՝ գենետիկական ինժեներիայի զարգացման վերաբերյալ:

Ներկայումս աշխարհի հազարավոր գիտական օջախներում աշխատանքներ են տարվում կենսաբանության նվաճումները մարդուն ծառայեցնելու արդյունավետ ուղիների և միջոցների հայտնագործման, ինչպես և դրանք արտադրական պայմաններում կիրառելու նըպատակով:

Մեր երկիրն իր արժանի տեղն ունի բիոտեխնոլոգիայի զարգացման ասպարեզում, և նրա հաջողությունները լայն ճանաչում են գըտել ամբողջ աշխարհում: Այդ է վկայում նաև վերջերս Մոսկվայում գումարված Եվրոպայի կենսաքիմիական ընկերությունների XVI կոնֆերանսը: «Արդի կենսաբանությունը հարուստ է ակնառու հայտնագործություններով,— կոնֆերանսի մասնակիցներին հղած իր ողջույնում գրում է ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— բայց է՛լ ավելի շատ բան դեռ պետք է արվի: Այդ բնագավառի գիտական հաջողությունները կարևոր դերդրում կլինեն մարդկության այնպիսի համապարփակ պրոբլեմների լուծման գործում, ինչպիսիք են վտանգավոր հիվանդությունների կանխումն ու բուժումը, պարենի ռեսուրսները, բնության պահպանումը և բնական հարստությունների ռացիոնալ օգտագործումը:

Գիտնականների միջազգային համագործակցությունը նպաստում է նրանց փոխըմբռնման, փոխվստահության աճին, երկրագնդի խաղաղության ամրապնդմանը, ծառայում այն գիտության մարդասիրական, ազնիվ նպատակներին, որը ճանաչում է բնության ամենաբարդ երևույթի՝ կյանքի առեղծվածները»:

digitised by A.R.A.R.@

# «ԿՐԱԿՈՑ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՍՐՏԻՆ»

«ՄԻ ՔԱՆԻ ԺԱՄ ԱՌԱՋ կատարվեց չարանենգ մահափորձ ընկ. Լենինի դեմ...

Լիակատար հանգստության, հակահեղափոխական տարրերի դեմ պայքարն ուժեղացնելու կոչ ենք անում ընկերներին»:

Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի նախագահ Յակով Սվերդլովի այս կոչով է սկսվում **Կրակոց հեղափոխության սրտին** գիրքը*, որ կազմել և խմբագրել է Ն. Դ. Կոստինը: Ականատեսների վկայություններից, դատական հետաքննության փաստաթղթերից բերված քաղվածքներով, կենսագրական խրոնիկայից արված մեջբերումներով վավերագրական ճշգրտությամբ նա ներկայացրել է մահափորձին նախորդած իրադրությունը: Նա ցույց է տվել, թե ինչպես էսէռների կուսակցությունը, պայքարելով սովետական իշխանության դեմ, վերածվել է մարդասպանների, դավաճանների հրոսակախմբերի, դիմում է տեռորիստական քայլերի, անկյունից գնդակ արձակում հեղափոխության ականավոր գործիչների, կուսակցության ղեկավարների վրա: Այդ գործողություններից ամենազարհուրելին եղավ 1918 թվականի օգոստոսի 30-ին Լենինի վրա արձակված երեք գնդակը՝ էսէռուհի Ֆաննի Կապլանի ձեռքով: Էսէռների կուսակցության դավաճանությունն ավելի ակնհայտորեն բացահայտվեց 1922 թվականին աջ էսէռների կուսակցության ղեկավարների դատավարության ժամանակ: Գրքում, ինչպես նշված է առաջաբանում, հակահարված է տրվում նաև հակակոմունիստական գաղափարախոսներին, որոնք գրպարտչաբար տքնում են ապացուցել, թե իբր հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո սովետների իշխանության քաղաքականությունը հատուկ է եղել տեռորը նրա թշնամիների դեմ: Լենինը բազմիցս նշել է, որ բռնությունը մեր գաղափարը չէ, որ մենք ձգտում ենք համաձայնության, բայց մեզ ըստիպում են դիմել տեռորի (տե՛ս **ԵԼԺ**, հ. 37, էջ 271—272):

Լենինի դեմ կատարված երեք մահափորձը, Վ. Վոլոդարսկու, Մ. Ուրիցկու և բոլշևիկյան կուսակցության այլ գործիչների սպանությունը, գերմանական դեսպան Միրբախի սպանությունը և ձախ էսէռների հուլիսյան խռովությունը սովետական իշխանությանը ըստիպեցին սպիտակ տեռորին պատասխանել կարմիր տեռորով: Գրքում ցույց է տրըված, թե ինչպես, ի պատասխան առաջնորդի դեմ կատարված նենգ մահափորձի, Ռուսաստանի հեղափոխական զանգվածներն ավելի սերտորեն համախմբվեցին բոլշևիկների լենինյան կուսակցության շուրջը: Հեռագրեր, հուշեր, նամակներ, որոնք անկեղծ անմիջականությամբ ցույց են տալիս դրանց հեղինակների՝ բանվորների, կարմիրբանակայինների, աշխատավոր գյուղացիության ջերմ սերը Վլադիմիր Իլյիչի նկատմամբ:

Էսէռների հակահեղափոխական ակտիվ գործունեության մասին են պատմում Լենինի հարազատների, մտերիմների հիշողությունները, վավերագրական, կենսագրական նյութերը, որոնք զետեղված են **Օգոստոսի 30-ից քիչ առաջ** ենթավերնագրի ներքո:

Վոլգայում, Ուրալում, Սիբիրում և այլուր կազմակերպված խռովությունների գլուխ էին կանգնած էսէռները: Բացահայտ էր նրանց կապը Անտանտի երկրների հետ, ակնբախ էր դառնում նրանց դավաճանությունը բոլշևիկյան կուսակցության ու հայրենիքի հանդեպ: Լենինը բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների դեպուտատների սովետների համառուսաստանյան V համագումարում մերկացրեց ձախ էսէռների դավաճանական քաղաքականությունը. «...Հոկտեմբերին, երբ հիմնվեց սովետական իշխանությունը, 1917 թվականի հոկտեմբերի 26-ին, երբ... մեր կուսակցությունը և Կենտգործկոմում նրա ներկայացուցիչները ձախ էսէռների կուսակցությանն առաջարկեցին մտնել կառավարության մեջ՝ նա հրաժարվեց» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 603):

* «Выстрел в сердце революции», «Политиздат», 1983 г.



Այդ պահից իսկ, հայտարարում է Վլադիմիր Իլյիչը, նրանք մեզ հետ չէին, այլ՝ մեր դեմ: Այդ համագումարում ձախ էսէռները վտարվեցին սովետներից: Զգալով, որ հողը երերում է իրենց ոտքի տակ՝ նրանք որոշեցին անցնել տեռորի՝ սպանել բոլշևիկյան ականավոր ղեկավարներին և ամենից առաջ՝ Լենինին...

1918 թվականի հունվարի 1-ին (14), մառախլապատ մի օր, Վլադիմիր Իլյիչը ելույթ ունեցավ Միխայլովսկի մանեժի բազմամարդ միտինգում: Միտինգից հետո Մարիա Իլյինիչնայի և շվեյցարացի կոմունիստ Ֆրիդրիխ Պլատենի հետ ավտոմեքենայով ուղղվեցին դեպի Սմոլնի: Ճանապարհին՝ կրակոցներ մեքենայի վրա: Դա առաջին մահափորձն էր Իլյիչի դեմ: Երկրորդը՝ մարտին էր: ՌԿ(բ)Կ ԿԿ-ի և սովետական կառավարության անդամները գնացքով Պետրոգրադից պետք է տեղափոխվեին Մոսկվա: Միայն Բոնչ-Բրուևիչի (որին հանձնարարված էր կազմակերպել սովետական կառավարության տեղափոխումը) ջանքերի շնորհիվ էր, որ գնացքը բարեհաջող տեղ հասավ: Երկու անգամ ձախողվում է էսէռների չարանենգ մտադրությունը: Էսէռների կուսակցության ղեկավարների, շարքային անդամների դատական ցուցմունքներից պարզ է դառնում, թե որքան բծախնդրորեն են նախապատրաստվել նրանք Լենինի դեմ կատարվող մահափորձին:

Լենինն անսահման կարևորում էր քաղաքականության մեջ անձնական ներգործության և ժողովներում, հավաքներում ելույթների դերը: «Առանց դրանց,— գրում էր նա,— չկա քաղաքական գործունեություն»: Եվ նա ելույթներ էր ունենում համագումարներում, կոնֆերանսներում, պլենումներում, խորհրդակցություններում, ժողովներում, կոնգրեսներում, գործարաններում տեղի ունեցող բանվորական «ուրբաթօրյա միտինգներում...»: «Միայն նրա հզոր օրգանիզմն ու արտակարգ աշխատունակությունն էին հնարավորություն տալիս նրան դիմանալու այդպիսի ուժից վեր ծանրաբեռնվածությանը»,— գրում է ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի անդամ Բ. Մ. Վոլինը:

Գրքի **ՌԿ(բ)Կ ՄԿ-ի ուղեգրով** գլխում կենսագրական խրոնիկայի, Միխելսոնի գործարանի բանվորների, Կրուպսկայայի, Կ. Տ. Սվերդլովայի և մյուս ականատեսների հիշողությունների, վկայությունների միջոցով ընթերցողի առջև կինոժապավենի նման պատկերվում են օգոստոսի 30-ի և նրան հաջորդած օրերը:

Այդ օրը ևս ուրբաթ էր և, ինչպես նշված է Միխելսոնի գործարանի բանվոր Ն. Իվանովի հիշողության մեջ, գործարանի դարպասին փակցված էր հայտարարություն կայանալիք միտինգի մասին: Այսօր Վ. Ի. Լենինի անվան գործարանի (Միխելսոնի) թանգարանում նվիրական մասունքի պես պահվում է Ռուսաստանյան կոմունիստական կուսակցության Մոսկվայի կոմիտեի՝ այդ օրվա համար Լենինին տրված ուղեգիրը:

Ինչպես հիշում են ժամանակակիցները, վատ սկսվեց 1918 թ. օգոստոսի 30-ը: Պետրոգրադից լուր ստացվեց, որ սպանվել է Մ. Ուրիցկին՝ Պիտերի արտակարգ հանձնաժողովի նախագահը: Մարիա Իլյինիչնան, կուսակցական ընկերները խնդրում էին Իլյիչին ելույթ չունենալ այդ օրը, սակայն Լենինը գտնում էր, որ հատկապես այդպիսի ժամանակ, երբ երկրում իրավիճակն այդքան լուրջ է, խնդիրը՝ բարդ, ավելի քան անհրաժեշտ է խորհրդակցել մասսաների հետ, լինել նրանց հետ. «Ի՞նչ է, ուզում եք ինձ թաքցնել տուփի մեջ, ինչպես բուրժուական մինիստրի՞», բողոքում էր Իլյիչը: Եվ գնում է միտինգի՝ նույնիսկ առանց պահակախմբի: Նա երկու ելույթ ուներ: Երկրորդը՝ Միխելսոնի գործարանում, ժամը 18 անց 30 րոպեին:

Պարզվում է, որ դեռևս առաջին ժողովից, Խլեբնոյ բիրժայից արդեն հետևում էին Լենինին: Միխելսոնի գործարանի ընդարձակ արտադրամասերում հավաքվել էին մի քանի հազար մարդ... Միտինգից հետո, երբ Լենինը մոտենում էր գործարանի բակում գտնվող ավտոմեքենային, էսէռ-տեռորիստուհի Կապլանը մի քանի անգամ կրակում է նրա վրա, հասցնելով երկու ծանր վերք: Փամփուշտները թունավորված էին: «Երբ հնչեց կրակոցը,— կարդում ենք «Բեդնոտա» լրագրի հաղորդման մեջ,— Լենինին շրջապատող բանվորները մի պահ կորցրին իրենց... Լենինը, արդեն վիրավոր, բացականչեց.— «Ընկերնե՛ր, հանգստություն... կազմակերպված պահեք ձեզ...»:

Հետաքրքրական են Իլյիչի վարորդ Ս. Կ. Գիլի հիշողությունները: Ինչպես նշում է Վ. Դ. Բոնչ-Բրուևիչը, չնայած գործարանի բակում գտնվող բազմամարդ ամբոխին, Գիլը համարյա միակ վկան էր Լենինի դեմ կատարված այդ մահափորձին:

Մեծ հուզմունքով ենք կարդում ականատեսների վկայությունը, թե ինչպես Իլյիչը, վարորդ Գիլի օգնությամբ, ինքն է նստում մեքենա և Սմոլնի հասնելով, ոտքով բարձրանում է երրորդ հարկ, իր առանձնասենյակը: Որքա՜ն ուժ ու կամք է հարկավոր վիրավոր վիճակում պահպանելու սառնասրտությունն ու հանգստությունը:

Առաջին գիշերը կենաց և մահու պայքար



digitised by A.R.A.R.@

էր: Ողջ երկիրն է տագնապած. կդիմանա՞, արդյոք, Լենինը: Լավագույն մասնագետների կոնսիլիում, հարազատների, կուսակցական ընկերների անքուն գիշերները, հոգատարությունն ու մեծ խնամքը, առաջնորդի ամուր օրգանիզմը և նրա անձկուն կամքն ու հոգու ամրությունը աստիճանաբար ապաքինում, ոտքի են կանգնեցնում նրան:

Կարդալով գրքի **Վիճակը շատ ծանր է** գլուխը, անհնար է զսպել հուզմունքն ու միաժամանակ չհիանալ հանճարեղ առաջնորդի ինքնատիրապետման մեծ ուժով: Նույնիսկ ծանր վիրավորված, նա մտածել է շրջապատի, հարազատների մասին: Ծանր վիճակում նա բժշկին խնդրում էր անկեղծորեն ասել՝ վե՞րջն է այդ: Եթե այո, նա ասելիք ունի...

Գնդակներից մեկը խոցել, փշրել էր ուսոսկրը, մյուսը թիկունքից՝ թիակների կողմից մտել էլ թոքաթաղանթի տակ, առաջացնելով ուժեղ արյունահոսություն և լռվել-մնացել էր պարանոցի աջ մասում՝ մաշկի տակ: Հատկապես վտանգավոր էր երկրորդը: Գնդակն անցել էր ամենականենաարար կենտրոնների մոտով: Միայն պատահական գլխի շարժումն էր փրկել Իլյիչին անխուսափելիից:

Մինչ բժիշկներն ամեն ինչ անում էին փրկելու Իլյիչի կյանքը, Լուբյանկայում արդարադատության ժողկոմ Դ. Կուրսկին, Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի նախագահի տեղակալ, հեղափոխական տրիբունալի նախագահ Յա. Պետերսը հարցաքննում էին էսէռ-տեռորիստուհի Կապլանին: Նախնական հետաքննության ընթացքում պարզվել էր, որ Կապլանը աջ սոցիալիստ-հեղափոխականների կուսակցության չեռնովյան խմբի անդամ է: Հարցաքննության ժամանակ Կապլանը համառորեն հրաժարվում է տեղեկություններ տալ իր մեղսակիցների մասին և թաքցնում է, թե որտեղից է ստացել իր մոտ եղած դրամը... «...Վկաների ցուցմունքներից երևում է, որ մահափորձին մասնակցել են մի խումբ մարդիկ... Ձերբակալված են մի քանի մարդ: Հետաքննությունն ընթանում է Մոսկվայի բոլոր շրջաններում»: Հերթական հաղորդագրությունները տեղեկացնում են, որ Կապլանն ընդունում է իր պատկանելիությունը էսէռների կուսակցությանը, բայց հայտարարում է, թե մահափորձից առաջ դուրս է եկել կուսակցությունից և ինքնուրույն որոշել ի կատար ածել Լենինին սպանելու իր մտադրությունը: Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովը կայացնում է դատավճիռը— գնդակահարել Լենինի դեմ մահափորձ կատարած, հեղափոխության սրտին գնդակ ուղղած Կապլանին: «Ավանեսովն ինձ կանչեց և հանձնեց Վ.ՉԿ-ի որոշումը: Դատավճիռն ի կատար ածվեց: Այն իրականացրի ես՝ բոլշևիկյան կուսակցության անդամ, բալթիական նավատորմի նավաստի, Մոսկվայի Կրեմլի պարետ Պավել Դմիտրիևիչ Մալկովս»:

Սեպտեմբերի 3-ին էր այդ, մահափորձից երեք օր անց:

Երբ սոցիալ-հեղափոխականների կուսակցության Կենտկոմը հրապարակավ հայտարարեց, որ ինքը ոչ մի մասնակցություն չի ունեցել տեռորիստական ակտերին, խմբի շատ անդամներ, զգալով այդ կուսակցության դավաճանությունն իր իսկ գաղափարներին, դուրս եկան կուսակցությունից. նրանց, ովքեր ընդունում էին իրենց գաղափարական սխալները, Լենինի կարգադրությամբ հնարավորություն տրվեց ուղղվելու: Նրանցից շատերը անձնվիրաբար կռվեցին կարմիր բանակի շարքերում:

Վ. Ի. Լենինի դեմ մահափորձ կատարելու առաջին իսկ լուրերից հետո քաղաքներից, գործարաններից, փաբրիկաներից, երկրի բոլոր կողմերից հեռագրեր ու նամակներ էին հասնում Կրեմլ, գալիս էին պատգամավորներ՝ առաջնորդի առողջության մասին տեղեկանալու: Ակնհայտ էր ողջ պրոլետարիատի և հեղափոխական գյուղացիության պայքարելու կամքն ընդդեմ սպիտակգվարդիականության, բուրժուազիայի, ողջ հակահեղափոխական ուժերի...

Գրքում բերված են բազմաթիվ նամակներ ու հեռագրեր, որ ստացել է Վ. Ի. Լենինը, Մոսկվայի մետաղագործ բանվորներից, կոնֆերանսի պատգամավորներից, ռազմաճակատների մարտիկներից, Պետրոգրադի, Տուլայի և այլ քաղաքների աշխատավորներից, գրողներից, հարյուրավոր այլ կազմակերպություններից ու անհատներից:

Իմանալով այդ հեռագրերի մասին՝ Իլյիչն ասում է, որ դրանք ավելի բարերար են ազդում իր վրա, քան բժիշկների բոլոր դեղերն ու կոնսիլիումները:

1918 թվականի սեպտեմբերի 5-ին հրապարակվում է սպիտակ տեռորին կարմիր տեռորով պատասխանելու ժողովրդական կոմիսարների խորհրդի որոշումը: Կարմիր տեռորը ոչ այլ ինչ է, նշում էր Ֆ. Ձերժինսկին, եթե ոչ աղքատ գյուղացիության և պրոլետարիատի կամքի արտահայտությունը՝ վերացնել ապստամբության ամեն տեսակ փորձ և հաղթել...

Առաջնորդի բուժման ընթացքին աշխատավորական լայն մասսաներին իրազեկ դարձնելու համար հրապարակվում են հատուկ բյուլետեններ, որոնց անհամբեր սպասում էր յուրաքանչյուր ոք: Գերմարդկային կամքի ուժով Լենինը կարողանում է հաղթահարել հիվանդությունը. վտանգն աստիճանաբար նահանջում է:

Պրոլետարիատն ավելի է համախմբվում իր առաջնորդի շուրջը և ավելի է ուժեղացնում անխնա պայքարը հակահեղափոխական տարրերի դեմ, խորապես համոզված, որ ինքը իրավունք չունի պարտություն կրելու, իրավունք չունի չհաղթելու: Վերջապես՝ մտերիմների և հարազատների այն տողերը, որոնք պատմում են «թե Լենինն արդեն կատակում է իրեն բուժող բժիշկների հետ» և թե որքա՞ն դժվար, հաճախ նաև անհնար է Լենինին հեռու պահել աշխատանքից, գործերից: Լենինը կրկին իր տարերքի մեջ է. գրում է, կարդում, հետաքրքրվում... Հեռագրեր ռազմաճակատների ղեկավարներին, կուսակցության տարբեր աշխատողների, ողջույններ կարմիր բանակին՝ Կազանի, Սիմբիրսկի, Սամարայի և այլ քաղաքների գրավման առթիվ, զրույցներ, հանդիպումներ քաղաքական գործիչների հետ: Իսկ արդեն սեպտեմբերի 17-ին Լենինը հիվանդությունից հետո առաջին անգամ վարում է ժողկոմխորհի խորհրդակցությունը: Առողջության մասին վերջին բյուլետենում Լենինը կատարում է հետևյալ լրացումը. «Այս բյուլետենի և իմ լավ ինքնազգացողության հիման վրա, իմ անձնական խորին խնդրանքն է՝ մի անհանգստացրեք բժիշկներին զանգերով ու հարցերով: 18 սեպտեմբերի, 1918 թ., Վ. Ուլյանով (Լենին)»:

Եվ կրկին սկսվում է Լենինի բազմազբաղ առօրյան: Բայց, զգալով, որ լարված աշխատանքը դեռ իր ուժերից վեր է, վերջապես համաձայնում է մի քանի շաբաթով գնալ Գորկա՝ հանգստանալու...

Սակայն Գորկայում նույնպես Իլյիչը շարունակում էր լարված աշխատել. գրում էր **Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին** գիրքը, ստանում էր ռազմժողկոմի օպերատիվ ամփոփագրերը, հեռագրեր, ինֆորմացիա ընթացիկ գործերի մասին, մասնակցում էր կարևոր հանդիպումներին, ընդունում պատգամավորների: Լենինի առողջացմանը, ինչպես գրում է Կրուպսկայան, մեծապես նպաստում էին հատկապես հաջողությունները ռազմաճակատներում:

1918 թ. նոյեմբերի 22-ին արտասանած ճառում Լենինը, հանգամանորեն խոսելով միջազգային իրադրության և այդ կապակցությամբ սովետական հանրապետությունում տիրող իրավիճակի մասին, նշում է. «Ամեն մի հեղափոխություն միայն այն ժամանակ մի բան արժե, եթե նա գիտե պաշտպանվել, բայց հեղափոխությունը միանգամից չի սովորում պաշտպանվել: Հեղափոխությունը միլիոնների զարթոնքն է նոր կյանքի համար... Եթե այդ մասսաները այժմ կարմիր բանակում ստեղծել են նոր կարգապահություն... բանվորական ու գյուղացիական դեպուտատների սովետների կարգապահություն, եթե այժմ նրանք դիմում են մեծագույն անձնազոհության, եթե նրանց միջև ստեղծվել է նոր համախմբվածություն, ապա այդ այն պատճառով, որ առաջին անգամ տասնյակ միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ և նրանց փորձի հիման վրա ծնվում և ծնվել է նոր, սոցիալիստական կարգապահություն, ծնվել է կարմիր բանակ: Նա ծնվեց միայն այն ժամանակ, երբ այդ տասնյակ միլիոնավոր մարդիկ սեփական փորձով տեսան... կառուցվում է նոր կյանք, որ այդ կյանքը սկսել են կառուցել իրենք, և որ նրանք այդ կյանքը կկառուցեն, եթե չխանգարի օտարերկրյա արշավանքը» (**ԵԼԺ**, հ. 37, էջ 147—148):

1918 թվականի նոյեմբերի 6-ին Լենինը մասնակցում է Սովետների համառուսաստանյան VI արտակարգ համագումարին: Ինչպես հիշում է համագումարի պատգամավոր, գրող Պ. Զամոյսկին, երբ Յակով Միխայլովիչը հայտարարեց, թե խոսքը տրվում է Վլադիմիր Իլյիչ Լենինին, մի պահ լարված լռություն տիրեց... Եվ հանկարծ ողջ դահլիճը, օթյակներից մինչև առաստաղը, այնպես լցվեց թնդյունով, որ թվում էր, թե կփլվեն թատրոնի և՛ պատերը, և՛ առաստաղը... Երիտասարդ սոցիալիստական երկրի բանվոր դասակարգի, չքավոր գյուղացիության՝ իր հանճարեղ առաջնորդի նկատմամբ տածած բուռն սիրո հորդացող հեղեղն էր այդ, որ լցրեց ողջ դահլիճը:

**Մենք բոլորս բոլշևիկներ ենք** գլխում զետեղված են պատառիկներ Լենինին ուղղված նամակներից, համագումարների պատգամավորների ողջույններից, կարմիր բանակի մարտիկների, գործարանների բանվորների, ուսանողների, երեխաների՝ երկրի տարբեր ծայրերից նրան հղված ջերմ, վստահությամբ, հավատով լի խոսքերը: Եվ կրկին ընթերցողի առաջ հառնում է անձնուն բոլշևիկի, աշխարհում սոցիալիստական առաջին պետության ղեկավարի անմահ կերպարը, որ անսասան հավատում էր երկրի վրա սոցիալական արդարության հաստատման հնարավորությանը, մարդու հերոսականությանը և իր ողջ էությամբ նվիրվել էր մարդկանց երջանկության համար մղվող պայքարին:

«Նրա միտքը, որպես կողմնացույցի սլաք, իր սուր ծայրով միշտ ուղղված է եղել աշխատավոր ժողովրդի դասակարգային շահերի կողմը»: Մաքսիմ Գորկու այս խորիմաստ խոսքերով է ավարտվում **Կրակոց հեղափոխության սրտին** հետաքրքրական գիրքը:

**Աիդա ՀՈՎՆԱՆՅԱՆ**



digitised by A.R.A.R.@

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ներկա պայմաններում, երբ սոցիալիզմի հակառակորդները ամբողջ ուժով ձգտում են խեղաթյուրել ու վարկաբեկել կոմունիստների հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի ապահովման գործում նրանց դերը առանձնակի հրատապություն է ստանում ռուսական կայսրության ծայրամասերում սովետական իշխանության հաստատման, աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման համար կոմունիստական կուսակցության ծավալած գործունեության լուսաբանումը:

Սույն պրոբլեմի ամբողջացմանը նպաստում է պատմական գիտությունների թեկնածու Վ. Պետրոսյանի մենագրությունը*, որը շարադրված է արխիվային նորահայտ փաստաթղթերի, մամուլի նյութերի, գրականության և հրատարակված փաստաթղթերի ուսումնասիրման ու վերլուծման հիման վրա: Աշխատությունում լուսաբանված է Վ. Ի. Լենինի ցուցումների կենսագործման շնորհիվ բոլշևիկների կատարած եռանդուն աշխատանքը բանվորներին, գյուղացիներին համախմբելու, Միջին Ասիայում բնակվող տարբեր ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ դաշինքը կռելու գործում:

Ներկայացնելով մյուս ժողովուրդների հետ միասին հայազգի որդիների մղած պայքարը Միջին Ասիայի եղբայրական հանրապետություններում սովետական իշխանության հաստատման համար՝ հեղինակը ցույց է տվել անգլիական ինտերվենտների և նրանց կամակատարների քստմնելի դերը Թուրքեստանում ինտերվենցիայի նախապատրաստման և քաղաքացիական պատերազմի սանձազերծման գործում, լուսաբանել անգլիական ինտերվենտների, բասմաչների, Էնվեր փաշայի զինված բանդաների դեմ բոլշևիկների ղեկավարությամբ Թուրքեստանի ժողովուրդների, այդ թվում և տեղի հայ աշխատավորության մղած պայքարի նշանակությունը:

* Վ. Գ. Պետրոսյան, Ինտերնացիոնալ դրոշին հավատարիմ *(Հայ ժողովրդի զավակների մասնակցությունը Միջին Ասիայում սովետական իշխանության համար մղած պայքարին), «Հայաստան» հրատ., 1983:*

Հեղինակը ներածությունում պատմական համառոտ տեղեկանք է տվել դեռևս անցյալ դարի 70—80-ական թվականներին Միջին Ասիայում հայերի բնակություն հաստատելու շարժառիթների, նրանց թվաքանակի, տնտեսավիճակի ու զբաղվածության մասին: Մեծ Հոկտեմբերի նախօրյակին հայ բնակչության թիվը Թուրքեստանում եղել է 80 հազար: Նրանք հիմնականում բնակություն են հաստատել Տաշքենդում, Ասխաբադում (այժմ՝ Աշխաբադ), Մերվում, Սամարղանդում, Չարջոուում, Կրասնովոդսկում, Կոկանդում, Կերկիում և այլ քաղաքներում ու բնակավայրերում:

Աշխատության կարևոր արժանիքներից մեկը Թուրքեստանի և Բաքվի սովետական իշխանությունների միջև ամուր կապի ստեղծման, միմյանց անհրաժեշտ օգնություն ցույց տալու հարցն է, որին հսկայական նշանակություն է տվել Վ. Ի. Լենինը: Կենսագործելով մեծ առաջնորդի ցուցումները՝ Ստ. Շահումյանը մշտապես հետևում էր Թուրքեստանում գործերի վիճակին և իր հերթին հնարավոր օգնություն ցույց տալիս այնտեղի սովետական իշխանությանը: Ի պատիվ հեղինակի, պետք է նշել, որ նա առաջին անգամ գիտական շրջանառության մեջ է դրել մի շարք նոր փաստաթղթեր, որոնք վկայում են Ստ. Շահումյանի և Թուրքեստանի ժողկոմխորհի նախագահ Ֆ. Կոլեսովի համատեղ ջանքերը՝ միմյանց նեցուկ լինելու, փոխադարձ օգնություն կազմակերպելու, ձեռնարկած միջոցների մասին կենտրոնական ժողկոմխորհին տեղյակ պահելու, վերջինիս դեկրետները ու կարևոր փաստաթղթերը տեղերում հաղորդելու գործում: Աշխատությունում հեղինակը անդրադարձել է շատ անվանի հեղափոխականների, որոնք ամեն ինչ արել են այդ կապը ամուր և անընդմեջ դարձնելու համար:

Բաքվի և Թուրքեստանի սովետական իշխանությունների կողմից միմյանց անհրաժեշտ օգնություն ցույց տալու հանգամանքը հեղինակը հավաստել է կոնկրետ օրինակներով, որոնցից կարևորվում է սովետական Բաքվին օգնության հասնելու նպատակով հայկական կամավորական ջոկատների կազմակերպումը: Այդ գործին մշտապես հետևում էր Ստ. Շահումյանը՝ «ջոկատների ներկայությունը Բաքվում համարելով կարևոր օգնություն» (էջ 59): Հիշյալ միտքը մենագրությունում ունի իր փաստական հիմնավորումը. դա 1918-ի հուլիսի 1-ին Թուրքեստանի ժողկոմխորհի նախագահ Ֆ. Կոլեսովին Շահումյանի հղած հեռագիրն է, որն առաջին անգամ հրապարակել է հեղինակը: Հեռագրում Շահումյանը խնդրում է թույլատրել հայկական դրուժինաների մեկնումը, նշելով, որ Ելիզավետպոլի ուղղությամբ մեծ մարտեր են մղվում, դրությունը օրհասական է, օգնությունը՝ խիստ անհրաժեշտ: Հայկական ջոկատների կազմակերպմանը մասնակցել է նաև այն ժամանակ Սամարղանդում գտնվող Հայկ Բժշկյանցը:

Ճիշտ է, ինչպես նկատել է հեղինակը, դեպքերի զարգացումը հայ կամավորական ջոկատներին հնարավորություն չի ընձեռել մեկնելու Բաքու (այդ ջոկատների մի մասն է մեկնել), բայց նրանց միահամուռ համախմբվածությունը, հեղափոխական Բաքվին օգնության հասնելու բուռն ձգտումը վկայում են, որ բոլշևիկները ջանք ու եռանդ չեն խնայել հայ աշխատավորներին Հոկտեմբերի դրոշի շուրջը համախմբելու համար: Բոլոր հայաշատ քաղաքներում Թուրքեստանի ժողկոմխորհի հատուկ մանդատով կազմակերպված հայկական ջոկատները մնացել են իրենց կազմավորման վայրերում, և նրանց շարքերը մտած հայ կամավորները պատրաստակամություն են հայտնել շարունակելու պայքարը Թուրքեստանում՝ հանուն սովետական իշխանության: Այդ դրուժինաների ճնշող մասը հավատարիմ է մնացել հեղափոխության գաղափարներին և մինչև վերջ կռվել սովետական իշխանության հաղթանակի համար:

Հեղինակն իրավացիորեն քննադատում է տեղի դաշնակցականներին, որոնք, «օգտվելով հայ աշխատավորության՝ Բաքու մեկնելու բուռն ցանկությունից, ձգտում էին ամեն կերպ կազմակերպված ջոկատների ղեկավարությունն իրենց ձեռքն առնել, հետագայում այն Բաքվում դաշնակցության խորհրդի տնօրինությանը հանձնելու կամ, հակառակ պարագայում, եթե այդ ջոկատները Բաքու չմեկնեն, դրանք Թուրքեստանում օգտագործեն իրենց ապագա նպատակների համար» (էջ 63):

Զուգահեռ անցկացնելով ինչպես Բաքվում, այնպես էլ Անդրկասպիայում 1918-ի հուլիսին հակահեղափոխական ուժերի առավել ակտիվացման միջև՝ հեղինակն իրավացիորեն նշում է, որ էսէռների, մենշևիկների, դաշնակցականների և այլ հակահեղափոխական ուժերի գործունեությունը շատ ընդհանուր գծեր ուներ, ու թերևս նրանք գործել են նախապես մշակված պլանի համաձայն, և որ վերջիններս, ապավինելով անգլիական իմպերիալիստներին, նրանց ամենաակտիվ աջակցությամբ կատաղի պայքար են ծավալել սովետական իշխանության դեմ:

Աշխատությունում փաստական հարուստ նյութի հիման վրա տրված է Թուրքեստանում ապաստան գտած հայ աշխատավորական զանգվածների մասնակցությունը միջինասիական ժողովուրդների մղած ազգային-ազատագրական հեղափոխական պայքարին: Մինչդեռ, հակառակ փաստական նյութի առկայության, գտնվել են պատմաբաններ, որոնք, կեղծելով իրողությունը, հանդես են բերել պատմության լրիվ անիրազեկություն, փորձել նսեմացնել ժողովուրդների ինտերնացիոնալ համագործակցության բազմաթիվ վառ էջեր: Վ. Պետրոսյանը համոզիչ փաստարկներով քննադատում է նման հեղինակների (Խ. Երզին, Ծ. Ծամագդին, Կ. Մալիշև) հակագիտական ու հակապատմական կոնցեպցիաները, նշում դրանց վնասակարությունը:

Աշխատությունում ընդհանուր առմամբ լավ է տրված անգլիական քաղաքականության էության քննադատությունը, քաղաքականություն, որը, ինչպես հայտնի է, երբեք ուղիղ գծով չի ընթացել: Անգլիան փորձում էր Միջին Ասիայում ստեղծել ներքին հակասովետական ճակատ՝ ձգտելով ամեն կերպ աջակցել հակահեղափոխական, սպիտակգվարդիական ուժերին: Նրա էմիսարները ամեն ինչ անում էին մուսուլմանական ժողովուրդներին Սովետական Ռուսաստանի դեմ հանելու համար:

Ուշագրավ են աշխատության այն էջերը, որոնք վերաբերում են Թուրքիայի նախկին ռազմական մինիստր Էնվեր փաշային, որը, դառնալով անգլիական իմպերիալիզմի գործակալը, ձգտում էր համախմբել միջինասիական բասմաչական բանդաներին և դրանք ծառայեցնել պանիսլամիզմի իր զառանցական պլանների իրագործմանը: Հեղինակը մանրամասնորեն պարզաբանում է ՌԿ(բ)Կ Կենտկոմի Միջին ասիական բյուրոյի ձեռնարկած միջոցները աշխատավոր մասսաների շրջանում լայն պրոպագանդիստական աշխատանք ծավալելու, Էնվերի պանթուրքական, պանիսլամիստական պրոպագանդան մերկացնելու համար:

Հետաքրքրական է իմանալ, որ միջազգային այդ ավանտյուրիստի բասմաչական բանդա-





digitised by A.R.A.R.@

ների գլխովին ջախջախել է Թուրքեստանի 1-ին հեծյալ բրիգադը՝ Հակոբ Մելքումովի հրամանատարությամբ, որին Ֆերգանայի բնակչությունը, ի նշան խորին հարգանքի, կոչել է «Յակոբ Տյուրյե»—Հակոբ զորավար:

Բասմաչական շարժումը Միջին Ասիայում ջախջախվեց: Դա սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության հաղթանակն էր:

Գրախոսվող աշխատությունում տեղ է տրըվում նաև ազգությունների ժողկոմին կից հայկական կենտրոնական բաժնի աշխատանքին: Այդ բաժինը լայն աշխատանք է ծավալել հայ բնակչության կուլտուր-կրթական մակարդակը բարձրացնելու, կոմունիստական ոգով նրան դաստիարակելու համար: Հայ աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը մեծապես նպաստել են նաև հայերեն լույս տեսնող թերթերը: 1919-ին Ասխաբադում հրատարակվել է «Շեփոր» թուրքեստանյան հայերեն առաջին թերթը, որը դառնում է Անդրկասպյան ռազմաճակատի ռազմահեղափոխական խորհրդի քաղբաժնի օրգանը: Այպա հիշատակվում է Թուրքեստանում երկրորդ հայերեն թերթը՝ Անդրկասպյան երկրային հեղափոխական կոմիտեի օրգան «Կոչնակ»-ը, որն իր կարևոր խնդիրն է համարել հայ աշխատավորների շրջանում տարվող գաղափարական աշխատանքի կազմակերպումը:

Գրքի կարևոր արժանիքներից մեկն այն է, որ հեղինակին հաջողվել է ժամանակի խորքից վեր հանել հարյուրավոր հայազգի զավակների, որոնք զենքը ձեռքներին մասնակցել են մեծ Հոկտեմբերի հաղթանակի և նրա նվաճումների պաշտպանության համար մըղվող պայքարին:

Անհրաժեշտ է միաժամանակ նշել, որ գրախոսվող աշխատության մեջ տեղ են գտել նաև մասնակի թերություններ: Առանձին էջեր ծանրաբեռնված են փաստագրական նյութերով, գլուխների և ենթավերնագրերի վերջում ընդհանրացումները քիչ են, կան կրկնություններ: Ցանկալի էր, որ գրականության տեսությունը հեղինակը տար առաջաբանում՝ անդրադառնալով նաև տվյալ թեմայով լույս տեսած ամբողջ գրականությանը: Գրքից օգտվելուն ակընհայտորեն խանգարում է անվանացանկի բացակայությունը:

Նշված թերությունները, սակայն, չեն նսեմացնում աշխատության գիտական արժեքը: Վ. Պետրոսյանի մենագրությունը հանձնարարելի է ընթերցողների լայն շրջաններին, որոնք բազմաթիվ նոր փաստեր և անուններ կգտնեն: Անուններ, որոնց փառքը տարիների հեռվից բնավ չի խամրել, որոնք իրենց հերոսական անձնազոհության, զրկանքների ու տառապանքների գնով ապահովել են սովետական իշխանության հաղթանակը, իրենց կյանքով ու գործով դարձել պրոլետարական համերաշխության, ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության խորհրդանիշ:

**Գոհար ՄԱՆՈՒԿՅԱՆ**

**Պատմական գիտությունների թեկնածու**


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ), **ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.**



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, բողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 15.06.84 թ.: Ստորագրված է տպագրության 13.07.84 թ.: ՎՖ 04356: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.082: Պատվեր 1419:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.